1916 № 8.—Փետրուարի 14 ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ — ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ — 10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 րուբլի, կէս տարուան 2 ր. 50 կ., Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ դպրոցների, ուսուցիչների և հասարակական հիմնարկութեանց համար՝ տարեկան 3 ր., կէս տարուան 2 ր.։ Արտասահման՝ տարեկան 5 ր. կէս տարուան 3 ր.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** Թիֆլիս, Արասարաղեան հրապար. № 7. Հեռախօս № 29.

Պոստի հասցէն.—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** տողին 10 կոպ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից։

Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։

Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։

## ԲԱՑՈՒԱԾ Է ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ 1916 Թ.

## ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ԳՐԱԿԱՆ-ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹԻ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

*ԾՐԱԳԻՐ. 1. Պաշտօնական տեղեկութիւններ, կառավարչական կարգադրութիւններ, Կովկասի Հայոց Բարեգործական Ընկերութեան Կենտրոնական Խորհրդի ու ճիւղերի հաշիւները, որոշումները, արձանագրութիւնները և շրջաբերականները. 2. Հեռագիրներ, ներքին և արտաքին տեսութիւններ, հասարակական, կուլտուրական և գիտական բովանդակութեամբ յօդուածներ, գրական նորութիւններ և պատմական տեսութիւններ, վէպակներ, պատմուածքներ. ոտանաւորներ և քննադատութիւն. 3. Քրոնիկոն, տեղեկութիւններ, կենսագրութիւն և մատենախօսութիւն, 4. Արուեստ, թատրոն, երաժշտութիւն և նկարներ։ 5. Պօստարկղ և յայտարարութիւն։*

*Թերթը բաղկացած է 16 մեծադիր երեսներից և լոյս կըտեսնէ կիրակի օրերը։*

*ՄԻՆՋԵՒ ԱՅԺՄ ՀԱՄԱՁԱՅՆՈՒԹԻՒՆ ԵՆ ՏՈՒԵԼ ԱՇԽԱՏԱԿՑԵԼՈՒ «ՀԱՄԲԱՒԱԲԵՐ»-ԻՆ*

*Աբեղեան Մանուկ, Ալթունեան Գէորգ, Աղասարեան Բուղդան (բժշկապետ), Այվազեան Բագրատ, Բաշինջաղեան Գէորգ (նկարիչ), Բերբերեան Մինաս, Դեմիրճեան Դերենիկ, Եսայեան տիկ. Զապէլ, Դաւթեան Յով., Էգիլեան Գուրգէն, իշխ. Թումանեան Գէորգ, իշխն. Թումանեան Մարիամ, իշխ. Թումանեան Միքայէլ, Թումանեան Յովհաննէս, Լէօ, Խանզադեան Յոլակ, Խոջա-Թումանեան Ռ., Կանայեանց Սա., Կարապ (Թաշճեանկ.), Կոստանեան Յովհաննէս, Ծուղուրեան Յարութիւն քահանայ, Մալխասեան Ստեփան, Մանուէլեան Միքայէլ, Մաղէնճեան Մամբրէ, Մելեան Մեսրոպ քահ., Մուսայէլեան Հ., Մելիք-Գարագեօզեան Գ., Յովհաննիսեան Միքայէլ, Յարութիւնեան Իսահակ, Յովհաննիսեան Հայկ, Յովհաննիսեան Տիգրան, Յովհաննիսեան Մ., Նար-Դոս, Նաւասարդեան Բագրատ (բժշկապետ), Շովրեան, Շարաֆեան Ալեքսանդր, Շիրվանզադէ, Չալխուշեան Գր., Պետրոսեան, Յարութիւն, Ջամալեան Արշակ, Սպենդիարեան Յովհաննէս, Սաֆրասեան Ա., Սալիւմեան, Տէր-Դանիէլեան Դաւիթ, Տէր-Գէորգեան Վահան, Տէր-Միրաքեան Յովհաննէս, Տոռոմեան Վ., Փիրալեան Յարութիւն, Փիրումեան Տիգրան, Փարեմուզեան, Քամալեան Սարգիս, Օլթեցեան Արամ։*

Խմբագիր՝ Ս. Յարութիւնեանց

Հրատարակիչ՝ Կովկասի Հայոց Բարեգործ. Ընկերութիւն

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## ՆՈՒԷՐՆԵՐ

### «Համբաւաբեր»-ի տարածման համար

*Խմբագրութիւնս շնորհակալութեամբ ստացաւ պ. Վ. Վարդապետեանից 2 օրինակի վճար 8 ր., թողնելով խմբագրութեանս բարեհայեցողութեանը ուղարկել գիւղական չքաւոր դպրոցների ուսուցիչներին։*

* * *

*«Համբաւաբեր»-ն ուղարկւում է Վրաստանի և Իմերէթի թեմի հայոց դպրոցներին պ. Կ. Խալաթեանի հաշւում՝ Դուռնուկ, Շամշուլդա, Բոլնիս-Խաչէն, Գետաշեն և Ուռուտ։ Պ.պ. Եղբարբ-Մէլքոնեանների հաշւում՝ Դսեղ, Պօղոս-Քիլիսա, Վերին-Քարհատ։ Պ. Մ. Քալանթարեանի հաշւում՝ Գետաշէն, Բանանց և Փիր։ Պ. Շաղխաթունեանի հաշւով ուղարկւում է Շամախու թեմի Մարզրասա և Սաղեան գիւղերի և Շամախի քաղաքի հայոց դպրոցին։*

# Արտաքին տեսութիւն

### ԴԱՇՆԱԿԻՑՆԵՐԻ ՆՈՐ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

—

*Քաղաքական մի խորատեսակ ակտ կատարուեց անցեալ շաբաթ Հաւրում, ուր ապաստանել է Բելգիայի կառավարութիւնը անցեալ տարուանից ի վեր։ Բելգիայի ռուսաց, ֆրանսացոց և անգլիացոց դեսպանները ներկայացան Բելգիայի արտաքին գործոց նախարարին և արին հետևեալ յայտարարութիւնը. «Դաշնակից պետութիւնները, որոնք մի ժամանակ ստորագրել են Բելգիայի անկախութիւնն ու չէզոքութիւնը երաշխաւորող դաշնագիրը, որոշել են այսօր հանդիսաւորապէս վերահաստատել իրենց պարտականութիւնները ձեր երկրի հանդէպ։ Այդ բանի համար մենք՝ Ֆրանսիայի, Մեծ-Բրիտանիայի և Ռուսաստանի դեսպանները, սահմանուած կարգով լիազօրուած լինելով մեր կառավարութիւնների կողմից, պատիւ ունենք յայտնելու, որ Բելգիայի չէզոքութիւնը երաշխաւորող պետութիւնները յայտարարում են, որ երբ ժամանակը գայ՝ բելգիացոց կառավարութիւնը պէտք է հրաւիրուի մասնակցելու հաշտութեան բանակցութիւններին, և որ նրանք չեն դադարեցնի պատերազմական գործողութիւնները, մինչև որ Բելգիան չվերստանայ իր քաղաքական և տնտեսական անկախութիւնը և առատօրէն հատուցումն չստանայ իր կրած վնասների համար և որ, վերջապէս, նրանք կօժանդակեն Բելգիայի թագաւորութեանը՝ վերականգնելու իր արդիւնաբերական և ֆինանսական կեանքը»։*

*Այս հանդիսաւոր ակտին ներկայ են լինում նաև Իտալիայի և Ճապոնիայի դեսպանները, որոնք յայտարարում են Բելգիայի արտաքին գործոց նախարարին, որ թէև իրենց երկրները չեն պատկանում Բելգիայի անկախութիւնն ու չէզոքութիւնն անցեալում երաշխաւորած երկրների թւին, այնուամենայնիւ իրանք որ և է առարկութիւն չունին դաշնակիցների կողմից արուած վերոյիշեալ յայտարարութեան դէմ, կամ, ուրիշ խօսքով, իրենք էլ յանձն են առնում այդ յայտարարութիւնից բղխող պարտականութիւնները։*

*Հարց է ծագում, թէ ինչով է պայմանաւորւում այս յայտարարութեան անհրաժեշտութիւնը։ Մինչև այժմ երևան չի եկել մի հանգամանք, որ Բելգիայի կառավարութեանը տեղիք տար նեղանալու, թէ դաշնակից պետութիւնները վերջին հաշուեհարդարի ժամանակ մոռանալու են յանիրաւի ոտնահարուած Բելգիան և նրա մատուցած ծառայութիւններն ընդհանուր գործին։ Գոնէ մամուլի և հասարակական շրջաններում մինչև այժմ այս մասին ոչ գրուել և ոչ խօսուել է։ Եթէ այս այսպէս է, ապա հասկանալի է, որ վերոյիշեալ յայտարարութիւնը՝ բելգիական ժողովուրդը կամ կառավարութիւնը հանգստացնելու համար չէ արուած, այլ ուրիշ նպատակով։*

*Այդ նպատակը հասկանալու համար հարկաւոր է ուշադրութեան առնել հաշտութեան կամ խաղաղութեան վերաբերեալ այն լուրերը, որոնք վերջին ժամանակներս բաւական յաճախ լոյս են տեսնում չէզոք երկիրների և մասնաւորապէս գուիցերական մամուլի մէջ։ Այդ լուրերը, որոնք մեծ մասամբ գերմանական դիւանագիտութեան թելադրանքներով են աշխարհ գալիս, շարունակ շեշտում են, որ Գերմանիան, չնայած մինչև օրս իր ունեցած ակներև յաջողութիւններին ռազմի դաշտերում, հաշտութեան համար պատրաստ է վերադարձնել հարևաններին իր գրաւած բոլոր հողերը՝ բացի Բելգիայից կամ գոնէ նրա ծովափնեայ ամրութիւնների շէրտից։*

*Այս լուրերը, որոնց աղբիւրը շատ լաւ յայտնի է Գերմանիայի քաղաքական-հասարակական շրջաններին, բուռն վիճաբանութիւնների են առաջ բերել վերջիններիս մէջ։ Գերմանիայում ոչ ոք լուրջ կերպով չի մտածում Ֆրանսիայից հող կտրելու մասին.* Wir haben von Elsass-Lothringien schon genug *(Էլզաս Լոտարինգիայից էլ արդէն կշտացել ենք), ասում են այնտեղ բոլոր փոքր ի շատէ կարևորութիւն ունեցող քաղաքական գործիչները՝ վերյիշելով այն անախորժութիւններն ու դժուարութիւնները, որ միջազգային քաղաքական կեանքում առաջ բերեց այդ գաւառների կցումը Գերմանիային։ Ռուսաստանից հող խլելու կողմնակիցներ կան Գերմանիայում, սակայն ոչ աչքի ընկնող թւով։ Անցեալ ամառ, երբ գերմանական փայլանցները ոչ գետ հարցնելով և ոչ բերդ առաջ էին սլանում դէպի Ռուսաստանի խորքերը՝ Գերմանիայում շատերն էին երազում Ռուսաստանից մի քանի նահանգ գրաւելու մասին. սակայն ներկայումս երբ գերմանական բանակները գամուել են Դուինայի ափին, իսկ միւս ռազմաճակատների վրայ էլ պատերազմն այնպիսի հանգամանք է առել, որ Գերմանիան շուտափոյթ յաղթանակի ոչ մի յոյս չունի, բայց մի երկարատև պատերազմով քայքայուելու և խորտակուելու շատ հիմնաւոր երկիւղներ ունի—ռուսական հողեր գրաւելու ախորժակը բաւական զսպուած է Գերմանիայում։ Այժմ այդ մասին գլխաւորապէս Բալթեան նահանգներից վտարուած բարոնների ազգականները՝ պրուսական իւնկերներն են շատ խօսում։*

*Այլ բան է Բելգիայի ամբողջական կամ մասնակի գրաւման խնդիրը. սրա առթիւ Գերմանիայի քաղաքական-հասարակական շրջանները բաժանուած են երկու մասի։ Ազգային լիբերալներից*

սկսած մինչև ծայրագոյն աջակողմը պահանջում են այդ գրաւումը։ Նրանք բաւականաչափ կողմնակիցներ ունեն կենտրոնի և մինչև անգամ ազատականների մէջ։ Այս հոսանքն այնքան ուժեղ է, որ պետական կանցլեր Բեթման ֆոն Հոլվէգն ստիպուած է համակերպել նրա պահանջներին, համոզուած լինելով, որ հողային գրաւումների պահանջը կարող է պատերազմը երկար տարիներ ձգձգել—մի բան, որ մահ է Գերմանիայի համար—նա հակառակ է այդ պահանջին։ Եւ եթէ անցեալ աշնանը ռայխստագում արտասանուած իր հռչակաւոր ճառի մէջ նա որոշ, ռազմական տեսակէտից կարևոր գրաւումների ակնարկներ արաւ՝ այդ պէտք է վերագրել վերոյիշեալ հոսանքի ազդեցութեանը։

Մեզ թւում է, թէ ահա այս հոսանքի ախորժակները զսպելու համար է արուած դաշնակից պետութիւնների վերոյիշեալ յայտարարութիւնը։ Մինչև այժմ նրանք Լոնդոնի դաշնագրով փոխադարձաբար պարտաւորուել էին անջատ հաշտութիւն չը կնքել Գերմանիայի հետ, բայց այդ դաշնագրի մէջ մի կէտ բաց էր մնացել, այն է, թէ ինչ պայմաններում նրանք կարող են միացեալ հաշտութիւն կնքել։ Այդ բանը բազմաթիւ ենթադրութիւնների և թիւրիմացութիւնների առիթ էր տալիս, որոնցից ամենակարևորն այն է, թէ դաշնակիցները կարող են հաշտութիւն ձեռք բերել Բելգիան զոհելու գնով։ Ահա այս բացը լրանում է Հաւրի յայտարարութեամբ։ Պատերազմը չենք դադարեցնի մինչև Բելգիան չվերստանայ իր քաղաքական և տնտեսական անկախութիւնը. ահա այն հստակ պատասխանը, որ տալիս են դաշնակից պետութիւնները Բելգիան գրաւելու կողմնակիցներին։

Եւ այս պատասխանը անկասկած կունենայ իր զգաստացուցիչ ազդեցութիւնը ժամանակաւոր յաղթանակներով արբած գերմանացիների վրայ։

Ա. Ջամալեան

11-ն փետր. 1916։

---

# ՏԱՃԿԱՀԱՅԵՐԸ

Հետզհետէ օսմանցի թիւրք գազանների ճիրաններից ճողոպրում են հայ անմեղ զոհերը և կրկին ու կրկին հաստատում և վաւերացնում այն դժոխային անցքերը, որ Միջին Ասիայի սովալլուկ գայլերի և բորենիների ձեռքով կատարւում են խակական դժոխք դարձրած Տաճկահայաստանում և հայաբնակ վայրերում։

Այսպէս «Р. Слово»-ի թղթակիցը հաղորդում է թէ՝ երեք ամիս դեգերելուց յետոյ նորերս Թեհրան հասաւ Հալէպցի մի հայ երիտասարդ։ Մի քանի լեզուներ իմանալու շնորհիւ ձևացել է արաբ, ծառայել է գերմանացի մի գործակալի, որը զէնք էր մատակարարում Պարսկաստանում մեր դէմ գործող հրոսակախմբերին։

Նա ձերբակալուել է Ղումում, բայց ամենակարող կաշառքի միջոցով ազատուել ու փախել է Թեհրան։

Հալէպում տեսել է այն բոլոր սարսափները, որ կրել է հայրենազուրկ լեռնցի հայ ժողովուրդը Միջագետքի արևելեան անապատներում.

Ահա նրա պատմածը.

«Յունիս ամսին Միջագետքի Հալէպ քաղաքի փողոցներում առաջին անգամ երևացին հայ վտարանդիների խմբերը։ Հազարաւոր կին, երեխայ և ծերեր մերկ ու սովալլուկ լցուեցին քաղաք։ Դրանք Հաջընի և Դորթ-Եօլի փախստականներն էին, որոնց արտաքսել էր թիւրք կառավարութիւնը։ Շուտով սկսուեց վտարանդիների հոսանքը ամբողջ Հայաստանից։ Դիարբէքիրի, Էրզրումի, Այնթափի, Մարաշի, Իզմիրի, Անգառայի, Զէյթունի և այլ նահանգներից եկած փախստականները կմախք էին դարձել ծանր ու երկարատև ճանապարհը գալուց։ Ոչ մի տղամարդ չկար նրանց մէջ 15 տարեկանից վեր։ Տասն օրուայ ճանապարհը նրանք անցել էին երեք ամսում, և ճանապարհին կոտորուել էր կէսը։ Զէյթունցիներին վանել էին՝ սպառնալով ամենքին էլ կրակի ճարակ դարձնել, եթէ համարձակուեն սակաւ ինչ յապաղել։

Դժբաղդները մի քանի շաբաթ ապրում էին կիզիչ արևի տակ, կեղտոտ քարուանսարաներում։ Սարսափելի էր նրանց մահացութիւնը։ Աւելի սարսափելի էին կանանց ու աղջիկների բռնաբարութիւնները՝ ուղեկցող զափթիէների կողմից։

Հայ կինն իր պատիւը պարտաւոր էր կրքերի զոհ դարձնել, որ նրա մերձաւորներին ապրելու իրաւունք տրուէր։ Մի յայտնի հարուստի աղջկայ իր հարջն էր դարձրել նրա հօր նախկին ծառան։ Մի այլ անուանի ընտանիքի մայրն ու աղջիկը մի ուրիշ զափթիէի հարեմի անդամներն էին։

Դրութիւնն այնքան սոսկալի էր, որ մի խոջայ անիծելով թիւրք կառավարութեանը, շուկայում դիմեց ամբոխին՝ ասելով. «Մահմեդականներ, միթէ այս է Իսլամի հրամանը, միթէ այս է հրամայում մեզ Ղուրանը»...

Խոջան ձերբակալուեց և կորաւ...

Հալէպի հայերն օգնում էին իրենց դժբաղդ եղբայրներին՝ ինչպէս կարող էին, որքան կարող էին։ Շուէդ Զալեանգէրը 500 որբի համար մի ապաստարան բացեց։ Գերմանացոց հիւպատոսի գութն անգամ շարժուեց. նա օգնում էր դրամով և միջնորդում թիւրք կառավարութեան առջև։ Բայց շուտով Պոլսից հրաման ստացաւ չխառնուել վալիի գործերին։

Գաղթեցնելիս՝ թիւրք կառավարութիւնն օրական 10 կոպէկ նպաստ էր խոստացել, բայց այդ ևս դադարեցրեց ու հարկադրեց չնչին վարձով աշխատել Բաղդադի երկաթուղու գծի վրայ։

Վալին՝ չկարողանալով կառավարել այդ բազմութիւնը, յայտարարեց, որ ցանկացողները կարող են արտասահման գնալ։ Սակայն այս մի դառն ծաղր էր, որովհետև հնար չկար արտասահման ուղևորուելու։

Այնուհետև թիւրքերը սկսեցին հայերին քշել Համսի և Դէր-Զօրի հովիտները։ Զօհրապը, Վարդգէսն ու բժ. Տաղաւարեանը՝ իսկապէս նահատակուել են։ Մի ժամանակ յայտնուեց մի քուրդ, որ ծախում էր Գրիգոր Զօհրապի նշանի մատանին։

Ուրֆայում հայերին չգաղթեցրին, բայց կոտորեցին բոլոր չափահաս տղամարդկանց։

Քիլիսայի հայերը կոտորածից փրկուելու համար պատրաստ էին մահմեդականութիւն ընդունել, սակայն այդ էլ չօգնեց և նրանց ևս բաժին ընկան այս սարսափները»։

---

## ՏԻԿ. ԶԱՊԷԼ ԵՍԱՅԵԱՆԻ ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆԸ

Փետրուարի 6-ին Թիֆլիսի ակմբանոցի դահլիճում, պոլսահայ գրագէտուհի տիկ. Զ. Եսայեանը կարդաց իր դասախօսութիւնը՝ «Հայկական վերջին հալածանքները Կ.Պոլսոյ մէջ»։

Նախ նկարագրելով Կ. Պոլսոյ հայութեան վերջին տարիների հասարակական և կրթական կեանքի բեղմնաւոր գործունէութիւնը, անցաւ Թիւրքիոյ արտաքին և ներքին քաղաքականութեան բնորոշման մինչև պատերազմի յայտարարումը։

Պատերազմ պաշտօնապէս չըյայտարարած՝ «Գէօբէն» և «Բրեսլաու» յածանաւերը ռմբակոծում են ռուսական ծովափնեայ քաղաքները, որից տեղեկութիւն չունէին ոչ կառավարութիւնը և ոչ ծովային նախարար Ջէմալ փաշան։

Կ. Պոլիսը գաւառներից եկած խայտաբղէտ զինուորներով լցուած էր։ Զինուորներ առանց կօշիկի, պատառոտած հագուստներով ման էին գալիս փողոցներում մի պատառ հաց մուրալով, մինչև զինուորական ծառայութեան ընդունուիլը։ Զինուորական հրամանատարութիւնը լրտեսական դրութիւն հաստատեց հայ զինուորների և սպաների վրայ, որպէս զի ամենափոքրիկ կասկածելի դէպքում պատժի նրանց, բայց բարեբախտաբար այդ կարգադրութիւնը իր արդիւնքը չտուեց։

Կ. Պոլսոյ ամբողջ տաճկահայոց համակրութիւնը դաշնակիցների կողմն էր ի հարկէ, որ թիւրքերին անյայտ չէր։

Մի թիւրք թերթ այսպէս էր գրում. «Թիւրք ժողովուրդին խորհուրդ կուտանք այլեւս թերթ չկարդալ, քանի որ հայերու դէմքերը մեր թերթի տեղ կըռնան ծառայել. առտուներ երբ փողոց կելլէք, դիտեցէք հայերու դէմքը. եթէ այսինչ օր դաշնակիցներն են յաղթեր՝ անոնց դէմքը կը փայլի ուրախութենէն, իսկ եթէ գերմանացիներն են յաղթողները՝ անոնց տրտմութիւնը ակնյայտնի է»։ Մի քանի ամիսներ առաջ ձերբակալուած էին մի խումբ հնչակեաններ, որոնք ամբաստանուած էին որպէս թէ մահափորձ էին կազմակերպել Էնվերի և Թալաաթ պէյի դէմ, բայց առանց դատավարութեան դրանց մահուան դատապարտեցին յայտարարելով, որ նրանք անկախ Հայաստան կազմելու ծրագիրն էին յղանում։

Երբ Դաշնակիցների ռազմանաւերը երևացին Դարդանէլում և ռումբերի տարափը տեղաց ծովափնեայ մարտկոցների վրայ, թիւրք իշխանութիւնները սարսափահար եղան, պատրաստւում էին արդէն հեռանալ մայրաքաղաքից։ Կ. Պոլիսը դարձաւ մի հսկայական հիւանդանոց։ Հայեր մի անգամ ևս ցոյց տալու համար իրանց քաղաքացիական պարտքի գիտակցութիւնը, ամեն թաղամասերում բժշկական և սանիտարական կայաններ հաստատեցին։ Սակայն թիւրք կառավարութիւնը յետ չկեցաւ իր հայաջինջ քաղաքականութիւնից։

«Սրբազան պատերազմը» հրատարակուեց և հայերը զգացին իրանց դրութեան ողբերգականութիւնը։ Արդէն ամեն օր գաւառներից հատ ու կտոր տեղեկութիւններ էին հասնում հայ ժողովրդի տեղահանութեան և բնաջնջման մասին։ Պոլիսն էլ զերծ չըմնաց բնաջնջման այդ սիստեմից, և ահա մի քանի օրուայ ընթացքում հաւաքեցին մօտ 700 հոգի՝ վաճառական, լրագրող, գրականագէտ, ուսուցիչ, առանց սեռի և դասակարգի խտրութեան, և նրանց խմբերով ճամբայ հանեցին դէպի Կոնիա և այլ տեղեր։ Չը խնայեցին նաև հայ զինուորներին՝ զինաթափ անելով, տաժանակիր աշխատանքների ենթարկելով և կամ ուղղակի սպանելով։

Վերջացնելով դատախօսութիւնը յարգելի դատախօսուհին ասաց, որ մեր տառապանքի օրերին մեր հայեացքները միշտ ուղղւում էին դէպի Կովկասահայութիւնը և մենք մխիթարուած էինք նրանով, որ այստեղ ապրում էին մեր եղբայրակիցները աւելի ազատ և տանելի պայմաններում։

Յետոյ յոյս յայտնեց, որ Ռուսական քաջարի զօրքը գրաւելով Վան, Էրզրում և Մուշը, վերջնականապէս պիտի ջախջախէ հայութեան և մարդկութեան թշնամի թուրք պետութիւնը։

Դահլիճը լիքն էր, և տիկինը ջերմագին ծափահարութեան արժանացաւ։

A—V

# Ներքին տեսութիւն

## ՊԵՏԱԿԱՆ ԿԵԱՆՔ

Փետրուարի 9-ին տեղի ունեցաւ Պետական Դումայի հանդիսաւոր բացումը։ Նիստից առաջ, ժամի $2^{1}/_{2}$-ին, Դումայի դահլիճներից մէկում կատարուեց մաղթանք Էրզրումի գրաւման առիթով։ Մաղթանքին ներկայ էր Թագաւոր Կայսրը Մեծ Իշխան Միխայիլ Ալէքսանդրովչի հետ։ Պետական Դումայի անդամները կայսրին ընդունեցին բարձրաձայն ուռաներով և օրհներգ (հիմն) երգելով։ Ողջունելով պատգամաւորներին և ցանկալով որ նրանց գործունէութիւնը արդիւնաւոր լինի, Կայսրը գնաց Տաւրիկեան պալատից, իսկ Մեծ Իշխան Միխայիլ Ալեքսանդրովիչը մնաց յատուկ օթեակում։ Դիպլոմատիական օթեակներում ներկայ էին դաշնակից պետութիւնների դեսպանները։ Ժամի 3-ին Դումայի նախագահ Ռոձեանկօն, բաց անելով Դումայի նիստը, արտասանեց մի հայրենասիրական ճառ, որի մէջ ամենից առաջ բացատրեց որ Թագաւոր Կայսրի ներկայութիւնը Դումայի բացման ժամանակ պատմական մի երևոյթ է, որ ցոյց է տալիս թէ ժողովրդական ներկայացուցչութիւնը կանչւում է կառավարութեան հետ միասին աշխատելու այն ծանր օրերին, երբ հայրենիքը ահաւոր պատերազմի մէջ է։ Որ այդ պատերազմը պիտի յաղթանակով վերջանայ, ապացոյց է Էրզրումի անկումը։ Ռուսական արևմտեան ճակատի վրայ էլ աճում է ռուս ժողովրդի զօրութիւնը և պատրաստւում են վճռական դէպքեր։ Ռուսաստանը չի թողլ տայ իր երկիրները խլելու և թշնամու դէմ կը հանէ իր ամբողջ դիմադրական ոյժը։

Ապա խօսեց մինիստրների խորհրդի նոր նախագահ Շտիւրմերը։ Նա տուեց ծրագրային մի քանի ընդհանուր ակնարկներ, որոնք ցոյց են տալիս թէ կառավարութիւնը ինչ տեսակ օրէնսդրական նախաձեռնութիւններ ունի ի նկատի։ Բայց համաշխարհային պատերազմը պահանջում է առժամանակ թողնել ներքին հարցերը և պետութեան բոլոր ոյժերը լարել՝ վերջնական յաղթանակ տանելու համար։ Առաջին մինիստրը նոյնպէս յայտարարում է այն սկզբունքը թէ ամեն ինչ պէտք է անել յաղթութեան համար։ Առաջնակարգ պետական պահանջ է համարում բանակների և ազգաբնակութեան պարենաւորման կարգաւորումը՝ աճող թանգութեան դէմ կռուելու համար։

Մինիստրների նախագահին ամբիոնի վրայ յաջորդեց պատերազմական մինիստր գեներալ Պոլիվանովը, որին Դուման ողջունեց երկարատև ծափահարութիւններով։ Մինիստրը համառօտ կերպով գծագրեց պատերազմական բեմի դրութիւնը, սկսած անցեալ տարուայ յուլիսից, երբ ռուսական զօրքերը, չունենալով բաւականաչափ ռազմամթերքներ, ստիպուած եղան նահանջել Լեհաստանում, որի առիթով Գերմանիան հրճւում էր, համոզուած թէ նրան պիտի յաջողուի մի քանի տեղ պատռել ռուսական ճակատը և ոչնչացնել ռուս զօրքը։ Այս բանը չը յաջողուեց գերմանացիներին և հիմա Ռուսաստանը, աւելի լաւ և ուժեղ պատրաստուած, սպասում է աւելի մեծ գործերի։ Ռուսաստանը մարդկային ոյժի պաշար դեռ շատ ունի, նրա դաշնակիցներն էլ արդէն ահագին չափերի են հասցրել իրանց բանակները, մինչդեռ դիտողութիւնները ցոյց են տալիս թէ Գերմանիայում, ընդհակառակն, մարդկային ոյժը հետզհետէ նուազում է։

Գեներալ Պոլիվանովից յետոյ խօսեց ծովային մինիստր Գրիգորովիչը, որին Դուման նոյնպէս ողջունեց բուռն ծափահարութիւններով։ Մինիստրը համառօտ զեկուցեց թէ ինչ գործեր է կատարել ռուսական նաւատորմը Բալթիկ և Սև ծովերում։ Յատկապէս վերջինիս նկատմամբ մինիստրն ասաց, թէ նա ներկայումս ուժեղացած է երկու նոր նաւերով ու շարունակում է իր ձեռքում պահել տիրապետութիւնը ծովի վրայ։ Նա պաշարման դրութեան մէջ է պահում Բոսֆորը, աջակցում է կովկասեան զօրքերին, դժուարացնելով մթերքների առաքումը Կ. Պոլսից Տրապիզոն և ռմբակոծել թիւրքական դիրքերը Սև ծովի ափերում։

Ողջոյնի ծափահարութիւններով ընդունուեց և արտաքին գործերի մինիստր Սազոնովը, որ մի ընդարձակ տեսութեան մէջ պարզեց քաղաքական դրութիւնը, ռուս դիպլոմատիայի գործունէութիւնը։ Գերմանիայի քաղաքականութիւնը, որ և այս ահաւոր պատերազմի պատճառ դարձաւ, եսամոլ էր, բռնութեան վըրայ հիմնուած։ Գերմանիան ուզում է մի գերմանօ-մահմեդական պետութիւն ստեղծել Հիւսիսային ծովի ափից մինչև Պարսից ծոցը, Ռուսաստանին և Անգլիային մահացու հարուածներ տալու համար։ Բայց մինիստրը ծաղրում է այդ միտքը։ Նա դատափետում է Բուլգարիայի դաւաճանութիւնը և յայտարարում է, թէ ռուս ժողովուրդը չի մոռանայ այս բանը։ Սերբիային, Չերնոգորիային յուսադրում է։ Շեշտում է այն հանգամանքը որ թիւրք կառավարութիւնը ձեռնարկել է հայերի բնաջնջման և շարունակում է այդ գործը ոչ առանց Գերմանիայի աջակցութեան և խրախոյս-

ների։ Հայ ժողովուրդը, ասում է մինիստրը, վտանգաւոր է համարւում այն պատճառով, որ չէ ձուլւում թիւրք տարրի մէջ և այդպիսով գերման.-թիւրք գաղափարին հակադրող մի ոյժ է ներկայացնում։ Ընդհանուր առմամբ, մինիստրը լաւատես հայեացքներ ունի և գովաբանում է դաշնակիցներին, մանաւանդ ֆրանսացիներին, իսկ անգլիացիների վերաբերմամբ ասում է, թէ մերձեցումը ռուսների և նրանց մէջ աւելի և աւելի սերտ է դառնում, այնպէս որ հին թիւրիմացութիւնները վերանում են։ Ի վերջոյ Սազոնովը շեշտում է Ճապոնիայի շատ գնահատելի աջակցութիւնը Ռուսաստանին։

---

## ԷՐԶՐՈՒՄԻ ԱՆՑԵԱԼԻՑ

### Ա

### ԴԻՐՔԸ

*Բուն Հայաստանի կամ Մեծ Հայքի 15 նահանգներից առաջինը կոչւում է Բարձր Հայք։ Եւ իրաւ, նա Հայկական Լեռնաստանի ամենաբարձր սարահարթն է, կտրատուած զանազան ուղղութիւններով ձգուող բարձր շղթաներով։*

*Բարձր Հայքը, ինչպէս վայել է իր դիրքին, ունի կլիմայական առանձնայատուկ, դժնեայ պայմաններ։ Գարուն ու աշուն համարեա չը կան այդ բարձր սարահարթի վրայ։ Ձմեռը տեւում է գրեթէ ութ ամիս և աւելի։ Պատահում է որ յունիս ամսուայ մէջ ձիւն է գալիս և բուքեր են լինում։*

*Հայկական ձմեռը առհասարակ հռչակուած է իր ձիւնառատութեամբ, բայց այս կողմից Հայաստանի ոչ մի մասը չէ կարող համեմատուել Բարձր Հայքի հետ։ Ձմեռուայ երկարութիւնը այստեղ և ձիւների խորութիւնը յայտնի էին հարևան երկիրներին ամենահին ժամանակներից։*

*Եւ այս հանգամանքը, իհարկէ, բնութեան մի անմիտ խաղ չէ։ Ձիւների այս անհուն առատութիւնից է որ Բարձր Հայքի զանազան կողմերից բղխում են բազմաթիւ յորդառատ և մեծ գետեր։ Այս բարձր սարահարթը կարծես մի վիթխարի ջրամբար է, որ բաց է թողնում անհաշուելի քանակութեամբ ջրեր և շարունակ էլի լցւում։ Ջրային այդ մեծամեծ արտահոսութիւններից բաւական է յիշատակենք Եփրատի արևմտեան մեծ ճիւղը (Կարա-սու), Ճորոխը, Կըզըլ-Իրմակը, Կուրը և Արաքսը։*

*Բարձր Հայք նահանգը բաղկացած էր ինն գաւառներից, որոնցից իններորդը կոչւում է Կարին։ Սա ունի մի ընդարձակ դաշտավայր, որ և կոչւում էր Դաշտ Կարնոյ։ Այս դաշտով է հոսում Եփրատը, կազմելով ընդարձակ ճահիճներ, որոնք մեր հին մատենագրութեան մէջ յայտնի են Ճամբ Կարնոյ կամ Ծովակ Կարնոյ անուններով։ Այդ Ծովակի հարաւային կողմում գտնւում էր գաւառի գլխաւոր կենտրոնը, որ կոչւում է Քաղաք Կարնոյ։ Դա այժմեան Էրզրումն է։ Քաղաքին շատ մօտ էր մի շատ մեծ աւան, որ կոչւում էր Արծն, հռչակուած իր բազմամարդութեամբ և մանաւանդ վաճառաշահութեամբ։*

*Կարինի գաւառը բնական պայմանների կողմից մայր հայրենիքի մի հարազատ կտորն է կազմում։ Ցուրտ մի երկիր, անփայտ, ծառատունկներից զուրկ։ Ձմեռնամերձին սկսւում է բուսական թագաւորութեան անեղոտ կեանքը։ Կարճ ամառ է տուած այս բարձունքներին, ուստի բուսականութիւնն շտապում է արագ հասակ քաշել և հասունանալ։ Ամառը շատ շոգ է լինում, բայց և այնպէս, արտերը յաճախ փչանում են առաւօտեան վաղահաս ցրտից։*

*Այսպիսի աշխարհագրական և կլիմայական պայմաններով օժտուած մի երկիր, ըստ երևոյթին, պակաս յարմարութիւններ պիտի ներկայացնէր մարդկային կեանքի բարգաւաճման համար։ Բայց Կարինի բարձրաւանդակն ունի ուրիշ մեծամեծ առաւելութիւններ, որոնք մոռացնել են տալիս նրա անյարմարութիւնները։ Այդ բարձրաւանդակը գրաւում է մի վերին աստիճանի բախտաւոր տեղագրական դիրք։ Նրա վրայով են անցնում ճանապարհները Արևելքից դէպի Փոքր-Ասիա, Սև ծով, Միջերկրականի ափերը։ Կարին քաղաքը մի բանալի է, որ փակում է այդ բոլոր ճանապարհները։ Նա տիրապետում է Հայկական Բարձրավանդակի մեծագոյն մասի վրայ և դրա միջոցով նաև Միջագետքի և Սիրիայի վրայ։ Կարինի դաշտով է անցնում հնուց հռչակուած մեծ ճանապարհը, որ Սև ծովի ափերից Պարսկաստանի վրայով տանում է բնական հարստութիւնների առասպելական հայրենիք Հնդկաստանը, որ գրաւիչ է եղել բոլոր ժամանակների ազգերի համար։*

*Միջազգային եռանդոտ և կարևոր շփումների մի լայն ուղի, ռազմական տիրապետութեան մի հզօր միջնաբերդ — այս աննման պայմանները չէին կարող չը գրաւել մարդկութեան ուշադրութիւնը։ Կարինի մէջ միայն զինուորականը չէր իր իսկական տեղում, այլ և վաճառականը։ Պատերազմական բանակները չէին որ երևում էին այդ քաղաքի պատերի տակ։ Աւելի բազմաթիւ, աւելի առօրեայ էին առևտրական կարաւանները, որոնք Արևելքի ու Արևմուտքի անբաւ հարստութիւններ էին փոխանակում։*

*Այս է պատճառը որ Կարինի դաշտը ռազմական և առևտրական մի խոշոր կենտրոն էր հնագոյն ժամանակներից։*

### Բ

### ՄԻՆՉԵՒ ԺԹ ԴԱՐ

*Բարձր Հայքը պետական շատ խոշոր նշանակութիւն է ունեցել մեր պատմութեան առաջին շրջաններից։ Դարանաղի կամ Կամախ գաւառում, Եփրատի վրայ, շինուած էր Անի անունով ամրոցը, ուր պահւում էին Արշակունի թագաւորների գանձերը և ուր թաղւում էին այդ թագաւորները։ Կրօնական տեսակէտից էլ առաջնակարգ նահանգներից մէկն էր Բարձր Հայքը։ Եկեղեաց գաւառում գտնւում էր Հայաստանի մօր, Անահիտ դիցուհու մեհեանը որ հռչակուած էր և Հայաստանի սահմաններից դուրս, ամբողջ Փոքր Ասիայում։ Քրիստոնէութեան մուտքն էլ մեծամեծ յիշատակներ թողեց այստեղ։ Գրիգոր Լուսաւորչի կալուածներից շատերն այստեղ էին գտնւում։*

*Կարինը, այժմեան Էրզրումը, Հայկական անկախութեան ժամանակներում մեր պատմագիրների կողմից չէ յիշատակուած իբրև յատուկ ամրացրած մի տեղ։ Բերդի նշանակութիւնը նա ստանում է այն ժամանակից, երբ Հայաստանը բաժանւում է Պարսկաստանի և Բիւզանդական կայսրութեան մէջ (չորրորդ դարի երկրորդ կէսում)։ Առաջին անգամ Թէոդոս Փոքր կայսրն էր, որ ամրացրեց Կարինը, հինգերորդ դարի սկզբում։ Այս պատճառով էլ Կարին անունը մոռացուեց Բիւզանդական տարեգրութիւնների և առօրեայ գործածութեան մէջ։ Բերդը կայսրի անունով կոչուեց Թէոդոսուպոլիս։ Նրա կոչումն էր՝ պաշտպանել Բիւզանդական Հայաստանը Պարսկաստանի դէմ։*

*Բայց Թէոդոսի կառուցած արհեստական ամրութիւնները շատ չէին նշանաւոր, որպէս զի կարողանային ռազմական մեծ կարևորութիւն տալ նրա քաղաքին։ Իսկապէս անառիկ ամրութիւն դարձրեց նրան Յուստինիանոս կայսրը վեցերորդ դարում։ Անունը, սակայն, չը փոխուեց։ Թէոդոսուպոլիսը այդ ժամանակից Արևմտեան Ասիայի ամենանշանաւոր ռազմական դիրքերից մէկն է դառնում։ Բազմաթիւ աշտարակներով անխորտակելի դարձրած նրա երկտակ հուժկու պարիսպների տակ այնուհետև երևացին շատ ահաւոր բանակներ. պարսիկներ, արաբացիներ, թաթարներ, թիւրքեր։ Բերդը շատ անգամ էր ձեռքից ձեռք անցնում և կործանւում։ Բիւզանդական կայսրութիւնը թուլանում էր Ասիայում սելջուկների արշաւանքների ժամանակից (ԺԱ դար) և Կարինն էլ վերջնականապէս ընկնում էր Միջին-Ասիական ցեղերի ձեռքը, կռուախնձոր դառնալով նրանց մէջ։*

*Արաբական արշաւանքներից յետոյ էր որ Կարին-Թէոդոսուպոլիսն ստացաւ իր այսօրուայ անունը—Արզրում կամ Էրզրում։ Ոմանք կարծում են որ այդ անունը տուել են արաբները, և Արզրում նրանց լեզուով նշանակում է Հռոմի երկիր, քանի որ Էր-*

գրումը երկար ժամանակ Բիւզանդական և Արաբական պետութիւնների սահմանագլուխն էր կազմում և բերդից իսկապէս սկըսւում էր Հռոմի (Բիւզանդիայի) երկիրը։ Իսկ ուրիշները այդ անունը կապում են Արծն հայկական քաղաքի կամ աւանի հետ, որ, ինչպէս ասացինք, Կարինի մօտ էր գտնւում։ Այդ մեծ առևտրական կենտրոնը, վստահելով իր արտակարգ բազմամարդութեան վրայ, հարկաւոր չը համարեց ամրութիւններով շրջապատել իրան, մանաւանդ որ ամուր Կարինն այնքան մօտ էր իրան։ Եւ ահա նա, «հռչակաւոր ու բազմամբոխ» մի կենտրոն, սելջուկեան Թուրքերի ձեռքն ընկաւ, կործանուեց հիմնայատակ. կոտորուած մարդկանց թիւը, ժամանակագիրների ասելով, հասնում էր 140 հազարի։ Ազատուածները թագնուեցին Կարինի մէջ, իսկ Թուրքերը, համարելով նրան նոյն Արծն քաղաքը, աղաւաղեցին Արծն անունը, դարձնելով Արզ և աւելացնելով Րում (Հռոմ) բառը։ Ըստ այս ստուգաբանութեան՝ Արզրում պիտի նշանակէ Հռոմի Արծն, որ շատ հաւանական չէ թւում։

ԺԶ դարից Էրզրումն անցաւ Օսմանեան Թիւրքերին, որոնք մնացին նրա մէջ, ինչպէս յայտնի է, մինչև ներկայ փետրուարի 3-ը։ Ամբողջ այս ժամանակ Էրզրումը անչափ կարևոր նշանակութիւն ունէր Ասիական Թիւրքիայի վարչական սիստեմի մէջ։ Դա մի խոշոր վարչական և զինուորական կենտրոն էր, շատ նշանաւոր և առևտրական տեսակէտից։ Էրզրումի նահանգը (վիլայէթը) մինչև 1877—1878 թ. պատերազմը պարունակում էր իր մէջ գրեթէ ամբողջ Թիւրքաց Հայաստանը։

Վարչական և զինուորական այս բարձր նշանակութեան պատճառով Էրզրումում կենտրոնացած էր թիւրքական մեծ բանակ։ ԺԸ դարի սկզբին Էրզրում գնացած յայտնի ֆրանսիացի ճանապարհորդ-գիտնական Տուրնըֆորն ասում է թէ Էրզրումի թիւրք բնակիչների թիւը մօտ 18 հազար էր, մեծագոյն մասամբ զինուորներ (ենիչերի և սպահի)։ Քաղաքն ունէր մզկիթների մի մեծ քանակութիւն, որ ոմանք հասցնում են 200-ի։ Թիւրքերից յետոյ քաղաքի ազգաբնակութեան խոշոր մասը կազմում էին հայերը—մօտ 6 հազար հոգի։ Առևտուրը համարեա ամբողջովին նրանց ձեռքին էր և, բնականաբար, հարկերի ամբողջ ծանրութիւնն էլ նրանց վրայ էր ընկնում։

Այս պատճառով է, անշուշտ, որ հայերն Էրզրումում մի տեսակ արտօնուած դրութիւն էին վայելում։ Գոնէ այսպէս է վկայում Յակոբ քահանայ Կարնեցին, որ ապրում էր ԺԷ դարի կէսում և թողել է Էրզրումի և նրա նահանգի մի համառօտ նկարագրութիւն։ Նա նկարագրում է որ հայերին թոյլատրուած էր ունենալ մահմեդականների տների պէս տներ. որ հայերը իրաւունք ունէին մահմեդականների հետ բաղնիս գնալ։ Այսպիսի թոյլատրութիւններ քրիստոնեաների վերաբերմամբ չէր ճանաչում մահմեդական աշխարհը։ Եւ իրաւունք ունէր միամիտ հայ քահանան միանգամայն գոհ լինելու իր ազգակիցների դրութեամբ այնպիսի մի ժամանակ, երբ օսմանեան ոյժը, նրա ասելով, ահեղ էր և դողացնում էր ոչ միայն հպատակներին, այլև ֆրանկներին։

Ահա ինչպէս է Յակոբ քահանան նկարագրում Էրզրումի տեսքը.

«Նախ և յառաջ բերդս այս պարսպաւոր է, և մէկ քան զմէկ բարձր աշտարակ, և ամենայն պուրճք խոսրովային է, որ է չէշխանայ, ու մեծութիւն նորա երկու կանոն սաղմոսի հոգիւ կու շրջապատի, և ունի չորս դուռն՝ արևելք, արևմուտք, հիւսիս և հարաւ։ Շինուածք, որ ի մէջ սորա զանազան և զարմանալի, սրբատաշ և փայտեայ գեղագործեալ ծաղկով քօշկեր և թրծեալ աղիւսեայ պալատներ, բաղանիք և մատրասաներ, բարձր սեաւ քարեայ զրամբք շինեալ ոսկեզօծ, որ յար և նման Բուզանդիոյ քաղաքիս։ Եւ ամենայն տուն Հայի և Տաճկի միապէս շինեալ կան և շինի. զանազանութիւն ոչ կայ»։

Ահա և հայոց առևտրի պատկերը.

«Հայոց երկու հազար տուն հոգիւ թէ գտանի. և վաճառականք ի չորից կողմանց հայոց ազգէս անթիւ կան նստեալ տարին բոլոր բովանդակ ի գնել և ի ծախել փառչայ և ապրշումեղէն, ցեղ ու ցեղ դումաշ և զանաւուզ, չուխայ, կտաւեղէն և քաթան, անթիւ և բազում ջաւահիր քար՝ ալմաստ և յեադութ, զըմրութ, լալ, սամուր և վարլախ և ամենայն մաղեղէն տարին բոլոր յայտնի գնեն ու վաճառեն, զի այժմ քաղաքս այս յոյժ բանտար է նման Ստամպօլայ, որ տարին 10 հազար բեռ մտանէ և ելանէ, որ 100 հազար դուռուշ մտանէ քասէն փաշային» [1])։

Այս փարթամ և մեծաքանակ առևտուրն էլ կազմում էր հայութեան իսկական ոյժը։ Նրան զիջելով էր որ թիւրքական իշխանութիւնը կարողանում էր թոյլ տալ քրիստոնեաներին այնպիսի իրաւունքներ, որոնք նոյնիսկ արտաքուստ ցոյց կը տային հաւասարութեան հնարաւորութիւն երկու հակառակորդ կրօնների մէջ։

Այդ ոյժին պէտք է վերագրել և այն զարմանալի հանգամանքը, որ պատմում է նոյն Յակոբ քահանան. Էրզրումի փաշաները (բէյլէրբէյիները) ուղարկւում էին Կ. Պոլսից և եթէ նրանք յայտնի էին դառնում իբրև կեղեքիչներ և ժանտ վարիչներ, բաւական էր որ մի քանի հայեր գնային Ստամբոլ և գանգատուէին. —փաշան իսկոյն պաշտօնանկ կը լինէր, իրան շրջապատողների հետ կը մատնուէր անարգ վիճակի, եթէ չէր զրկուի կեանքից։

(Կը շարունակուի) Լէօ

---

## ԹԱՆԳՈՒԹԵԱՆ ԵՒ ԳԵՐԲՆԱԿՉՈՒԹԵԱՆ ԱՌԹԻՒ*)

Շնորհիւ ձեռք առնուած այս միջոցների և այլ հանգամանքների, գիւղատնտեսական մթերքների գները այնքան էլ շատ չեն բարձրացել Ֆրանսիայում և մինչև իսկ Պարիզում, չնայելով որ այդ սպասելի էր, քանի որ նրա ամբողջ հիւսիսային մասը բռնուած է թշնամիներով։ Ուսուցչապետ Շ. Ժիդը հաւաստացնում է, որ պատերազմող երկիրներից Ֆրանսիան և Ռուսաստանը աւելի քիչ են նեղւում թանգութիւնից։ Պարիզի սպառողական մի ընկերութիւնից 14 տեսակ ուտեստի գլխաւոր մթերք առնելով նա տեսել է, որ միջին հաշուով գները բարձրացել են միայն 13%-ով։

Եթէ այժմ այդ բարձրացումը համեմատենք Բեռլինի գների հետ, այն ժամանակ ըստ պաշտօնական տուեալների՝ 1915 թուի յուլիսին 20 տեսակ ամենից անհրաժեշտ մթերքների գները 78%-ով բարձր են եղել, քան թէ 1914 թուի յուլիսին։

Անգլիայում գները բարձրացել են 43%-ով, Շուէցարիայում—20%-ով և Իտալիայում—14%-ով, այսինքն աւելի պակաս, քան Գերմանիայում։

Այսպիսով որչափ որ մի երկրում աւելի են պարապում գիւղատնտեսութեամբ՝ զուգընթացաբար կօօպերացիայի զարգացման հետ, այդտեղ այնքան աւելի քիչ են բարձրանում գիւղատնտեսական մթերքների գները։

Սակայն ամենից շատ կեանքը թանգացել է Աւստրիայի քաղաքներում, ուր գները բարձրացել են 86%-ով։

Մեր հայրենիքը—իբրև գիւղացիական երկիր—պէտք է որ միւս երկիրներից աւելի քիչ նեղուէր թանգութիւնից, բայց այստեղ առաջ է գալիս մի երկրորդ առանձնայատուկ գործօն (ֆակտոր), որը թանգացնում է մեր կեանքը։

Մեր առևտուրը սովոր է մեծ շահ ստանալու և աշխատանքի այն փոքր տոկոսը, որ ստացւում է այժմ առաջին անհրաժեշտ մթերքներից, առևտրականին չի գոհացնում։ Նա աշխատում է այնպիսի մթերքներ բերել, որից ստացուած օգուտը շատ մեծ լինի, և նա տհաճութեամբ է ծախում այնպիսի մթերքներ, ինչպիսին է շաքարը և այլն։ Եթէ կարելի լինէր շաքարի և ալիւ-

---

[1]) Յակոբ Կարնեցի—«Տեղագիր Վերին Հայոց», Վաղարշապատ, 1903, եր. 31, 37.

*) Տես «Համբաւաբեր» № 6։

ները. յոյն ուսուցչապետ Պրոյերեսիոսի (Պարոյր Հայկազն) աշակերտները՝ Գրիգոր և Բարսեղ, յունաց եկեղեցու երեւելի հայրք, որոնց երկերը թարգմանուեցին հայերէն։ Աթէնքի դըպրոցի հայ ուսանողները ոչ միայն յաջողութեամբ մրցում էին յոյների հետ, այլև նրանց միջից դուրս էին գալիս կատարեալ գիտնականներ, որոնք գրաւում էին բուն իսկ Աթէնքում ամբիոններ։ Ափսոս միայն մեզ չեն հասել նրանց անունները, բացի Պարոյրից, որի անունը անշնորհ յոյները փոխել են Պրոյերեսիոս։ Անկասկած, այս երիտասարդները լաւ գիտէին իրենց մայրենի լեզուն և գուցէ գրում էին էլ ասորոց, պեհլևի և յունական տառերով, ինչպէս վկայում է Մ. Խորենացին *), այլապէս V դարը՝ Հայոց գրականութեան Ոսկէ դարը չէր լինի. վասն զի հարիւր տարուայ ընթացքում անհնարին է լեզու ստեղծել և նրա զարգացումը գագաթնակէտին հասցնել։ Երբ 406 թ. Մեսրոպը կարգի բերեց Հայոց նշանագրերը, Ս. Գիրքը և Հարց Սրբոց երկերը թարգմանուեցան, Հայաստանը ծածկեցաւ դպրոցների ցանցերով։ Ուսումն ու կրթութիւնը աւարտածներից 60 յառաջադէմ աշակերտ, Սահակ Պարթև և Մեսրոպի բարեխօսութեամբ Վռամշապուհ թագաւորը ուղարկեց արտասահմանի դպրոցները՝ Կեսարիա, Եդեսիա, Կ. Պոլիս, Աթէնք և Աղէքսանդրիա, ուսումը կատարելագործելու։ Գիտութեան հարուստ պաշարով դարձան երիտասարդները Հայաստան և. անխոնջ աշխատելով գիշեր ու ցերեկ, ճոխացրին մեր հին գրականութիւնը և, անմահ յիշատակ թողին մեզ Իբրև արժանի աշակերտներ Մեծն Սահակի և Ս. Մեսրոպի, նրանք, մեր թարգմանիչները, անհուն սիրով ծառայել են ազգային լուսաւորութեան սուրբ գաղափարին։

(Կը շարունակուի) Մ. Շովրեան

## ՓԱԽՍՏԱԿԱՆՆԵՐԻ ՇՈՒՐՋԸ

Կովկասի Հ. Բ. Ընկ. Խորհրդի և Հայկական Կենտրոնական Կոմիտէի նախագահ պ. Ս. Յարութիւնեանցը ներկայացրել է փախստականների գործերի գլխաւոր լիազօր գեներալ Թամամշևին մի զեկուցում, որի մէջ պնդում է, որ փախստականների դրութիւնը կանոնաւորելու նպատակայարմար միջոցն այն է, ամէն մի փախստական ստանայ իրեն հասանելիք պայեօկը կանխիկ դրամով, բայց միևնոյն ժամանակ պէտք է հիմնել ուտեստեղէնի պահեստներ, որ տեղից նրանք կարողանան գնել արժան գնով ով ինչ որ ցանկանայ։

Գեներալ Թամամշևը ընդունել է այս առաջարկութիւնը և խնդրել է պ. Յարութիւնեանին ներկայացնել ծրագիր, թէ ինչպէս պէտք է կազմակերպել գործը։

Ծրագիրը ներկայացրուած է, սպասւում է, որ մօտ ապագայում հարցը կը լուծուի դրականապէս և իրագործումն կը յանձնարարուի հասարակական հաստատութիւններին։

***

## ԿՈՐԱԾ ԵՐԵԽԱՆԵՐ

Վանեցի Մարինա Պարոնիկեանը կորցրել է իւր որդուն՝ Յարութիւն Պարոնիկեանին, 14 տարեկան. Նրա տեղն իմացողները թող յայտնեն հետևեալ հասցէով. Հ. Կ. Կոմիտէի գրասենեակ, Արտաքաթեան հր. № 7։

***

Յուլիս ամսոյն՝ Վանէն գաղթելով հասայ Իգդիր, այնուհետև գալով Թիֆլիս կորցրի քրոջս և եղբօրս։ Եղբօրս անունն է Կարապետ (Կալօ) Պիզպիզեան, 12 տարեկան, իսկ քրոջս՝ Գայծառ, 6 տարեկան, հօրս անունն է Գաբրիէլ. Նրանց տեղն իմացողներին խնդրում եմ յայտնել ինձ այս հասցէով. Гудовича ул. № 11 кв. № 1, французскій консулъ, Ազատ Գաբրիէլեանցին։

*) Գր. I գլ. Ш Պատ. Հայոց, Վենետիկ 1843 Թ.։

## ԳԱՒԱՌ

Բաթում, 4 փետրուարի.

Մեր քաջայաղթ զօրքերի Էրզրումի գրաւումից յետոյ, ակնյայտնի է, որ շուտով Տրապիզոնն էլ կը գրաւուի։

Ինչպէս ուրիշ վայրերում, նոյնը և Տրապիզոնի շրջանի կիրճերի և քարանձաւների, լեռների և թագստոցների, քաղաքների և գիւղերի մէջ անշուշտ կան հրաշքով ազատուած մեր հայ եղբայրներից և քոյրերից, որոնք գտնւում են մեծ կարիքի մէջ և կարօտ են օգնութեան։

Մինչև Տրապիզոնի գրաւումը, այժմէն իսկ անհրաժեշտ է դրանց մասին պատրաստութիւն տեսնել թէ դրամի, ուտելիքի և թէ հագնելիքի մասին, որպէս զի այդ օգնութիւնը հասցուի ռուսական քաջարի զօրքերի գրաւելու հետ զուգընթացաբար։

Մօտ օրերս «Строгій» ականակիրը Արխաւի շրջանից, Խոփի կողմերից բերեց Բաթում 15 հոգի տղամարդ, կին և երեխաներ, որոնք մահմեդական հայեր են։ Բաթումի շրջանային կոմիտէի կողմից դրանք յանձնուած են քաղաքային կոմիտէի հայր նախագահ Մ. ա. ք. Մելեանին, հոգալու կարեւոր պէտքերը։ Դրանք իրենց պարզապէս հայ են անուանում և, հայերէն հասկանում են, շատերը նոյն իսկ խօսում։ Խոփ-Արխաւի շրջանում գտնուած Խիգի, Զարուապ, Զաուշչի, Արտագա, Չէնգիլ ու Կարճի գիւղերն իրենց 300—400 տուն բնակիչներով այդպիսի հայեր են։ Անհրաժեշտ է այժմէն իսկ օգնութիւն կազմակերպել, մարդ ուղարկել այդ կողմերը Բարեգործական Ընկերութեան կենտրոնական կոմիտէի կողմից։

Տեղական Կ. Հ. Բ. Ընկ. ճիւղի վարչութեան անդամ տիկիններից ոմանք պատրաստակամութիւն են յայտնել սիրով մասնակցելու այդ գործին։

Բաթումում շատ կան Սև ծովի այդ ափերը մօտիկից ճանաչողներ և տրապիզոնցիներ, որոնք թէ միանգամայն ձեռնհաս են և թէ պատրաստ աշխատանքի մէջ մասնակցելու։ Մեծ հաւանականութիւն կայ, որ մեծ թուով պատսպարուած և ազատուած հայեր յայտնուեն։

***

***

## ԿՐԹՈՒԹԵԱՆ ԳՈՐԾԸ ՍՈՒԽՈՒՄԻ ՇՐՋԱՆՈՒՄ

Մի ժողովուրդ, որ փշերի վրայ է նստած, այդ Սուխումի հայ ազգաբնակչութիւնն է, որի թիւը մօտ 20,000-ի է հասնում։

Կտրուած մայր երկրից, հազիւ ազատուած թաճկի դաժան ու ամարդի սրից, նրանք անցել են այս շրջանը և իրենց յատուկ տոկունութեամբ այստեղի անբերրի հողերի վրայ արիւն. քրտինք թափելով, այժմ ոչ միայն բուսական, մանաւորապէս ծխախոտի կուլտուրա են ստեղծել, այլ և հարստացրել են ամբողջ շրջանը, որը ոչ մի մինգրել ու աբխազ ուրանալ չի կարող և որի ճշմարտութեան լաւագոյն փաստը Սուխումի քաղաքագլուխ պ. Դավդգիրիձէի արած յայտարարութիւնն է և այն ջանքերը, որպէսզի հայ տարրին սեփականութիւն տալով, կապէ շրջանիս հետ։

Հարստացնելով ամբողջ շրջանը, ճիշտ է, հայը ինքն էլ այժմ հարուստ է, բայց շնորհիւ այն պատահականութիւնների, որին կարող է նա ամէն բոպէ ենթակայ լինել օտարի հողի վրայ, օտարի դռանը և, ցաւ ի սիրտ պէտի ասեմ, այն անհեռատեսութեան և հեշտութեան, որով նա ծախսում է իր արիւն-քրտինքով և ահ ու դողով վաստակածը, նրա դրութիւնը միշտ էլ կարող է թշուառութեան ցուպը յենուել նրա պատին։ Եւ այդ անմխիթար դրութեան մէջ, հայը միայն մի լուսաւոր կէտ ունի այժմ. ուսում տալ, կրթել իր զաւակներին։ Նկատելի է, որ այդ բանը ըմբռնել է ժողովուրդը. նա դպրոցի կարիքն արդէն զգում է, սակայն չի կարողանում գեղեցիկ կերպով ձևաւորել. բացի այդ, որոշ անհատներ էլ աշխատում են օգտուել նրա տգիտութիւնից։ Շրջանս, բացի կանոնաւոր հիմքերի վրայ դրուած մի տասնեակ ծխական դպրոցներից, եռապատիկ մասնաւոր, տիրացուական դպրոցներ ունի։ Իսկ թէ որքան վնասակար և անօգուտ են այդ տիպի դըպրոցները, այդ մասին խօսելն աւելորդ է, ինչպէս և այն անհատների, որոնք «ուսուցիչ» են համարւում այդ դպրոցներում։ Պատկերը լրիւ դարձնելու համար յիշեմ մէկ օրինակ։ Անցեալ օրե-

րում մի գիւղում ներկայացում էր կազմակերպուած. բեմը պատրաստելիս, երբ դուրս էինք հանում հնուց մնացած բեմական կտորները, ի միջի այլոց գտանք երկու ձեռք կլոունի շորեր, որոնց վրայ գրուած էր «մասխարա»։ Հարց ու փորձը պարզեց, որ մի քանի տարի առաջ այդ և հարևան գիւղի «խոջաները» (ուսուցիչները) տարէնը մի քանի անգամ այդ շորերը հագած ընկել են զանազան գիւղեր, մասխարութիւններ արել։

Ճիշդ է, այժմ նրանք այդպիսի «դաստիարակութիւնից» ազատել են ժողովրդին, սակայն չեն մոռացել ընդհանրապէս Տէր-Թոթիկեան մեթոդը։

Եւ շրջանիս մտաւորականութիւնը մտածեց աստիճանաբար վերջ տալ այդ տիպի դպրոցներին, տեղերը բաց անելով ծխականներ. սակայն հարկաւոր է դպրոցի հետ կապուած մի անձն, որը շարունակ շրջագայէր գիւղերում, համոզէր և հասկացնէր։ Այդպիսին կարող էր լինել միայն շրջանային տեսուչը։ Եւ Կ. Հ. Բարեգործական ընկերութեան Սուխումի ճիւղի վարչութիւնը առաջինը եղաւ այդ հարցը բարձրացնողն ու նոյն իսկ այդ բանին 500 ռ. յատկացնելով, սակայն ընկերութեան առաջարկը չընդունուեց։

Այդ բանը որոշ չափով թուլացրեց ընկերութեան վարչութեան և նրա շուրջ խմբուած բանիմացների եռանդն ու ձգտումները, սակայն հէնց այդ ժամանակ հրապարակ եկաւ շրջանիս ծխական դպրոցների ուսուցչութիւնը, որ ժողովի էր գումարուել քաղաքում՝ մանկավարժական և դպրոցական այլ հարցեր քննութեան առնելու։ Ուսուցչական ժողովն էլ կանգնեց այդ ցաւոտ հարցի վրայ, և ի նկատի առնելով այն հանգամանքը, որ եթէ թեմական տեսուչը թէկուզ տարեկան երկու անգամ այցի գայ, այնուամենայնիւ իր թռուցիկ շրջագայութեամբ տարիներով ամրացած սովորութիւնը արմատախիլ անել չի կարող, ընտրեց իր միջից երեք հոգի և առաջարկեց հոգեւոր իշխանութեան՝ սրանց հաստատելու շրջանիս հայ դպրոցների վերահսկիչների պաշտօնում։

Բարձր իշխանութիւնն ընդառաջեց այդ ցանկութեան և այսօր պ. պ. Ա. Տէր Յովհաննեան, Վ. Աղեկեան և Տ. Սողոմոնեան հաստատուել են իրենց պաշտօնում։ Նրանց է յանձնուած ղեկավարելու ամբողջ հայ դպրոցական-կրթական կեանքը Սուխումի շրջանում։

Սիրում ենք հաւատալ, որ պարոններն իրենց յանձնուած գործը կը կատարեն ամենայն բարեխղճութեամբ, և այն եռանդը, որով նրանք արդէն գործի են կպել, հաւատում է մեզ, որ շուտով կրթական գործը Սուխումի շրջանում օրինակելի կը համարուի։

Էդուարդ

—

ԱԽԱԼՑԽԱ, 5 փետրուարի.— Շաբաթ, յունուարի 30-ին, քաղ. ժողովարանի դահլիճում Ախալցխայի հայ-կանանց Բարեգ. Ընկ. նախաձեռնութեամբ, յօգուտ հայ փախստականների տեղի ունեցաւ մի ներկայացում համերգային բաժնով։ Խաղացին «Եղբայր և Քոյր» դրաման 5 գործ։ Համերգային բաժնում երգում էին քառաձայն երկսեռ խումբը խմբապետ Պօղոս Տէր-Կարապետեանի ղեկավարութեամբ։ Դահլիճը ամբողջովին լիքն էր հանդիսականներով։

— Քաղաքումս ներկայումս համարեա օրերով միս չէ ճարւում, մանաւանդ տաւարի, եղածն էլ անպէտք է։

— Քաղաքային վարչութիւնը, ժողովրդին օգնութիւն հասցնելու պայմանով վերջին ժամանակներս սկսել է իր անունով ալիւր և շաքար բերել և վաճառել բնակիչներին. գովելի գործունէութիւն է։ Անցեալ օրերը ստանալով մի վագոն շաքար տուել էր քաղաքիս նորակազմ «Կօօպերատիւ ընկերութեան» վաճառելու։ Յիշեալ ընկերութիւնը սկզբում այդ շաքարը վաճառում էր քաղաքիս բոլոր հասարակութեանն էլ. սակայն վերջին օրերս, երբ շաքարի խիստ պակասութիւն է զգացւում, սկսեց վաճառել միայն իր բաժնետէրերին, իսկ ոչ-բաժնետէրերից պահանջում էին, որ բաժանորդագրուեն, վճարելով 12 ռուբլի։ Այսպիսով ոչ-բաժնետէր հասարակութիւնը զրկուեց քաղաքի անունով եկած շաքարից և ստիպուած եղան բաժանորդագրուել։ Ի՞նչ իրաւունքով նրանք քաղաքի անունով եկած շաքարը խնայում են քաղաքի ժողովրդին վաճառելուց և շահագործում յօգուտ իրան բաժանորդագրուելու... Չէ՞ որ այդպիսի վարմունքը մի կեղեքիչ վաճառականի վարմունքից չի զանազանւում, որի դէմ կռուելու համար է ստեղծուել ինքը։

— Տաճկահայաստանի գլխաւոր քաղաք Էրզրումի առման լուրը քաղաքիս ժողովրդեան մեծ ուրախութիւն պատճառեց։ Ամսիս 4-ին քաղաքը տօնական կերպարանք առաւ. դուրս էին հանել դրօշակները, իսկ ցերեկուայ ժամը 1-ին, բոլոր խանութները փակելով հասարակութիւնը հաւաքուեց, իրանց համքարական դրօշակներով, քաղաքային այգում, որտեղ քաղաքիս ամեն ազգի հոգեւորականութիւնները կատարեցին գոհաբանական մաղթանքներ։ Եկել էին քաղաքից զինուորները, պաշտօնեաները, աշակերտութիւնը իրանց դրօշակներով, և անհամար երկսեռ բազմութիւն։ Մաղթանքից յետոյ 21 անգամ թնդանօթ արձակուեց։ Էրզրումը մեր Ախալցխայի հայ ազգաբնակութեան նախկին հայրենիքն է. Ախալցխայի, Ախալքալաքի և մասամբ էլ Ալէքսանդրապոլի հայութիւնը 1829 թուին Էրզրումից գաղթել է այստեղ՝ տաճկական վրէժխնդիր բռնութիւններից ազատուելու համար։ Քաղաքիս հայոց երկսեռ դպրոցների աշակերտութիւնը, Էրզրումի առման առթիւ, այդ օրը արձակուեց տուն։ 3 օր էլ արձակուեցին քաղաքիս միւս դպրոցները։

— Քաղաքումս, Արգար Սարայդարեանի դստեր նշանադրութեան հանդէսին՝ Կ. Հ. Բ. Ընկ. Ախալցխայի ճիւղի օգտին՝ Յակոբ Եօրտանեանի և Պ. Խաչատրեանի միջոցով հաւաքուեց 21 ռուբլի։

Թ.

—

Ն. ԱՂԲԱՇԻ Սպառողական խանութի շէնքում տեղի ունեցաւ նոյն ընկերութեան արտակարգ ընդհանուր ժողովը, որը որոշեց անդամ գրուել տեղիս փոխատու խնայողական ընկերութեան, վարկ բանալով մինչև հինգ հարիւր ռուբլու։

---

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

Փետրուարի 8-ին կայացաւ Հ. Կ. Կոմիտէի արտակարգ նիստը, որը նուիրուած էր Էրզրումի, Խնուսի և Մուշի շրջաններում կենդանի մնացած հայերին օգնելու հարցին։

Կոմիտէի նախագահը զեկոյց, թէ ստացուած վերջին տեղեկութիւններից երեւում է, որ բաւական հայեր, առանձին խմբերով, ազատուել են կոտորածից, ծածկուելով լեռներում, երբեմն էլ պատսպարուելով իշխանաւոր քիւրդերի մօտ։

Զինուորական իշխանութիւնից և հայկական կամաւորների խմբերից լուր է ստացուել, որ հայերը գտնւում են ծայրայեղ ծանր դրութեան մէջ. մերկ են, քաղցած են, շատերն էլ հիւանդ են։

Կոմիտէն ի նկատի առնելով այս տեղեկութիւնները, որոշեց.

1) Օգնութեան խմբեր կազմել և ուղարկել երեք ուղղութեամբ՝ Էրզրում, Խնուս և Մուշ, յանձնարարելով խմբերին՝ ժողովել ցրուած հայերին, տալ հագուստ, սնունդ, բժշկական օգնութիւն և վտանգաւոր շրջաններից հեռացնել անվտանգ վայրերը։

2) Գտնել բժիշկներ, ֆելդշերներ և ուղարկել խմբերի հետ։

3) Այդ նպատակին առայժմ յատկացնել 30,000 ռ.։

4) Մինչև խմբերի կազմելը փոխադրել Իգդիր հեռագրով 5000 ռ. Սահակ Մատինեանին, որ տեղական գործիչներից ուղարկի մարդիկ Խնուս, Մուշ, որ սկսեն օգնութեան գործը։

*Իսկ Էրզրում արդէն ուղեւորուել է կենտրոնական կոմիտէի կարսի լիազօր, իրաւաբան Գ. Ս. Ջամոյեանը՝ ընկերակցութեամբ Կարսում գտնուող էրզրումցի Զաքարիա Զաքէոսի։*

***

### ՆՈՒԷՐՆԵՐ ՓԱԽՍՏԱԿԱՆՆԵՐԻ ՕԳՏԻՆ

*Կովկասի գլխաւոր Կոմիտէից 12,000 ռ. արհեստանոցներ հիմնելու փախստականների համար։*

***

*Հայկ. կենտր. կոմիտէն փետր. 7-ին Փոխարքայի դիւանատան միջոցաւ ուղարկել է՝ Ղ ա ր ս 1250 վերմակ, 1250 ներքնակի և 1250 բարձի մթել, 1600 շապիկ-վարտիկ և 5250 կտոր տաք շորեր։ Է ջ մ ի ա ծ ի ն՝ 1250 վերմակ, 1250 ներքնակի և 1250 բարձի մթել, 1600 շապիկ-վարտիկ և 5100 կտոր տաք շոր։*

***

*Հայոց կենտրոնական կոմիտէի Նպաստաբաշխ Յանձնաժողովի միջոցով 1916 թուի յունուարի 30-ից մինչև փետրուարի 5-ը որպէս նպաստ յատկացրել է 504 ընտանիքի (2,994 անձ) 2,096 ռուբլի 90 կոպէկ, 355 որբերի 372 ռ. 95 կոպ. և 179 մշեցի և սասունցի գաղթականների՝ 250 ռուբլի 60 կոպէկ։*

***

*Կ. Հ. Բ. Ը-թիւնը 1916 թուականի յունուարին մուտք ունեցել է 16017 ռ. 98 կ. և ելք նոյնքան։*

***

*Կ. Հ. Բ. Ընկ. վարչութիւնը ի նկատի ունենալով, որ Էրզրումի շրջաններում բազմաթիւ փախստական գաղթականներ կան, միջնորդութիւն է յարուցել գաղթականական գործի գլխաւոր լիազօր Թամամշեւի առաջ, որ վերջինս կարգադրի շտապով ուղարկել Կարս երկու վագոն տաք իրեր և շորեր՝ Էրզրումի գաղթականներին հասցնելու համար։*

***

*Կ. Հ. Բ. Ընկ. շնորհակալութեամբ ստացել է Մութաֆեան ընտանիքից յօգուտ իւր ճաշարանի Յովհաննէս Մութաֆեանի մահուան տարելիցին հոգեհանգիստ կատարելու փոխարէն 50 ռ.։*

***

*Սկուիրի քաղաքից.—Երզուեալ հաւատարմատար Սահակ Գէորգեան Մելքիսեդեկեանից յօգուտ փախստականների 15 ռ.,*

—

### ՃԻՒՂԵՐ

*Ն. ԱՂԲԱՇ. — Ներքին Աղբաշի Կ. Հ. Բ. Ը-թեան ճիւղի վարչական ժողովը որոշեց ներկայացում տալ և արդիւնքը յատկացնել գիւղումս ապրող նորեկ փախստականների երեխաներին դասական պիտոյքների և թղթերի համար. պատուիրել փախստականներին՝ ուղարկել դպրոց իրենց երեխաներին և համաձայն շրջաբերականի շրջել շրջանի գիւղերը, ցուցակագրել նրանց և տեղեկանալ կարիքների մասին։*

*Պէտք է աւելացնել և այն, որ 29 յունուարի Աղբաշի ծըխական դպրոցի շէնքում տեղական փոխատու-խնայողական ընկերութեան ընդհանուր ժողովը միաձայն որոշեց՝ 1915 թուի արդիւնքից 75 ռ. յատկացնել տեղիս դպրոցին՝ փախստականների երեխաների ուսման համար։*

«Կաշրա»

***

*Զաքաթալայի ճիւղից յօգուտ փախստականների 100 ռ.*

***

*Կ. Հ. Բ. Ընկ. Բաշ գիւղի ճիւղը յունուարի ընթացքում ունեցել է եկամուտ «Աւետիք» մանգալուց 18 ռ. 81 կ., պ. Ալ. Վարդանեանից 3 ռ., յունուարի 6-ի ներկայացումից զուտ արդիւնք 147 ռ. 70 կոպ., Կակոյեանից ու Դուլոյեանից 20-ական կոպէկ։*

---

### ԱՔՍՈՐԸ

*(Խ-ին)*

*Դատաստանս եղաւ վճռական ու կարճ,*
*Դռները բոլոր փակւեցին յանկարծ.*
*Այս լայն աշխարհում՝ իմ բաղդը խոպան,*
*Ինձ բաժին թողեց Արաքսոյ ճամբան։*

*Գորշ անապատով մռայլ, անգիւման,*
*Մեր խումբն է անցնում ստուերի նման.*
*Քնքուշ ձեռքերիս զարկել են շղթայ,*
*Ոտքերս են կռծում կապանքն երկաթեայ։*

*Հալածում են մեզ պահակները քար,*
*Մեզ քաղցն է մաշում ու ճամբան երկար.*
*Ընկածի մասին չեն էլ ափսոսում,*
*Թաղում են արագ փխրուն աւազում։*

*Աքսորն է նայում խօլ ու սևամած,*
*Հեռւում հայրենիքս ու մահն իմ դիմաց,*
*Դահիճներս են լուռ—սոսկումով յղի—*
*Օրհնուած լինիս, Տանջանքի՛ ուղի…*

. . . . . . . .

*Իմ քնքո՜ւշ քոյրեր, իմ խեղճ հայր ու մայր,*
*Լացէք ինձ համար, լացէք ինձ համար։*

Գ. Քեալաշեան

---

## Մատենախօսութիւն

### ՎՐԱՑ ԱՇԽԱՐՀԻՑ

### ԷԿԱՏԵՐԻՆԷ ԳԱԲԱՇՈՒԻԼԻ

—

*Վերջին քառասուն տարուայ ընթացքում վրաց գրականութեան մէջ հանդէս եկած կին-գրողներից իրանց տաղանդով աչքի են ընկնում Էկատերինէ Գաբաշուիլի, Անաստասիա Խոշտարեան և Նինօ Նակաշիձէ վիպասանուհիները, Նինօ Օրբելիանի, Գանդեկիլի և Բարիլինա բանաստեղծուհիները, Անաստասիա Թումանիշուիլի-Ծերեթելի մանկական գրողը և Նատալիա Ազիանի գրամատուրգը։ Վերջին երկուսը հայ են և օրիորդ Ազիանի իսկական ազգանունը Դոնդարեան է՝ Գորի քաղաքից։ Դրանք բոլորն էլ այժմ ողջ են և դեռ գրիչը ձեռքից վայր չեն դրել, իսկ օրիորդներ Դոնդարեանն ու Բարիլինան — տակաւին երիտասարդ աղջիկներ են։*

*Էկատերինէ Գաբաշուիլին, որ ծնուած է 1851 թուին, մի առանձնայատուկ յարգելի տեղ է գրաւում վրաց գրականութեան մէջ։ Նա իր հայրենիքի խոշոր տաղանդներից մէկն է, գրում է պատկերներ ու վիպակներ։ Նրա առաջին վէպիկը լոյս է տեսել ճիշդ 35 տարի առաջ և երբ 4 տարի առաջ տպագրուեց նրա երկերի հաւաքածուն, պատկերների և վիպակների թիւը հասնում էր քառասունվեցի։ Դրանց մեծագոյն մասը բաղկացած է ընդամենը 3—20 երեսից, իսկ աւելի խոշորները միայն մի քանի հատ են։ Ուրեմն Գաբաշուիլին ընդհանրապէս քիչ է գրել, բայց որակի կողմից նրա համարեա բոլոր պատկերներն ու վիպակները ընտիր բաներ են, շատ լաւ մտածուած, որոշ փիլիսոփայական հայեացքով առաջնորդուած և կանացի քնքոյշ ու ջերմ զգացումով ներ-*

չնչուած։ Գեղեցիկ ու պարզ է միաժամանակ նաև հեղինակի գործածած լեզուն։

Նրա գրուածների մեծ մասի նիւթը առնուած է գիւղական կեանքից և նրանցով պարզում է ընթերցողների համար, թէ որչափ դժբախտ են սիրող սրտերը գիւղական մթնոլորտում՝ շրջապատող նախապաշարումների, հնացած սովորութիւնների և առողջ քննադատութեան չըդիմացող հայեացքների շնորհիւ։

Ահա ձեզ «Օրէնա և Բուչէ» վէպիկը։

Ունեւոր գիւղացի Գողխայի աղջիկ Բուչէն և չքաւոր հարեւանի տղայ Թեոոն սաստիկ սիրահարւում են և անտառում երջանկութեան րոպէներ վայելում։ Գողխան անպատճառ ուզում է ունեւոր փեսայ ճարել, ուստի մերժում է իր օժիտով աղջկան Թեոյին տալ և սպառնում է սպանել նրան, եթէ գիւղից չըհեռանայ։ Սա սաստիկ ծեծելով իր յանցագործ աղջկան բռնի ամուսնացնում է մի ուրիշ գիւղացի այրի ծերունու հետ. սակայն վերջինս, նկատելով իր կնոջ վաղաժամ յղութիւնը, յետ է բերում և յանձնում ծնողներին։ Սրանք նորից անգութ կերպով ծեծում են Բուչէին, ներս գցում ախոռը և դուռը յետևից փակում։ Մենակութեան մէջ ծնած երեխային Բուչէն սպանում է վշտից և այդ յանցանքի համար դատարանի վճռով Սիբիր ուղարկւում, իսկ նրա ջերմ սիրոյ առարկայ Թեոոն, որ մահուան սպառնալիքի տակ փախել էր գիւղից, զրկւում է պատահմամբ իր մի ձեռքից և մուրացկանութեամբ ապրում...

Առնենք «Սիրահարութիւն Դիդ-Խեւ գիւղում» վէպիկը»։

Մարոյին ու Պաւլէին նշանադրում է գիւղի քահանան։ Երկու ամսից յետոյ նոյն հոգևոր հովիւը յայտարարում է աղջկայ մօրը, թէ նշանուածների մէջ հեռաւոր խնամութիւն լինելու պատճառով, նրանց ամուսնացնել չէ կարելի։ Սարսափահար եղած Մարօն ուշաթափւում է։ Երբ նրան ուշքի են բերում, բացականչում է. «Յղի եմ, խղճացէք ինձ»... Ոչ մի աղաչանք, պաղատանք չի օգնում և հոգևոր կառավարութիւնը անդրդուելի է մնում իր վճռում։ Մարոյի հայրը որոշում է բռնի ամուսնացնելու իր աղջկան երկու որդի ունեցող մի այրի մարդու հետ։ Պաւլէն, իմանալով այդ, դաշոյնով սպանում է աղբերի ճանապարհին իր ջերմ սիրած Մարոյին և փորձում է ինքնասպանութիւն գործել, սակայն անցորդները խլում են նրա ձեռքից դաշոյնը։ Դատարանի վճռով մարդասպանը բանտ է նետւում և վշտից մեռնում այնտեղ, իսկ նրա մայր Տասիան, լսելով այդ, խելագարւում է...

«Դուրգէնաուլիս Բարօ» գրուածքում գեղանի Բարօն սաստիկ սիրում է Ջիրոյին և նրա հետ մտերիմ յարաբերութիւն ունենում, սակայն դրանց ամուսնացնել անյարմար էր, որովհետև Ջիրօն իրանից մեծ եղբայր ունէր Մաքսիմէ անունով, և գիւղի սովորութեամբ նախ պէտք է մեծ եղբայրը ամուսնանար, յետոյ փոքրը։ Ուստի Բարօյին զոռով պսակում են Մաքսիմէի հետ... Երկու եղբայրների մէջ ատելութիւն է սկսւում և մի քանի ամսից յետոյ փոքրը սպանում է մեծին և դատարանի վճռով Սիբիր ուղարկւում։ Տղաների մայրը վշտից խելագարւում է, իսկ դժբախտ այրի Բարօն մտնում կուսանոց...

«Դժբախտ սիրահարութիւնը» պատմուածքի մէջ Նինիկայի Մարօ աղջիկը սաստիկ սիրահարւում է իր եղբայրացու Գաբրոյի վրայ։ Այդ Նինիկան վեց աղջիկ ունէր և տղայ զաւակ չունենալով, որդեգրում է համագիւղացի Գաբրոյին։ Երիտասարդը, գիւղի հնաւանդ սովորութեան համաձայն՝ հանդիսաւոր կերպով համբուրում է Նինիկայի կնոջ բաց ծիծը և «եղբայր» դառնում նրա աղջիկների։ Սիրահարները գաղտնի համբուրւում են, պաշտում իրար, բայց իրենց զգացումի մասին ձայն հանել չեն կարողանում, որովհետև նրանց ամուսնանալը սրբապղծութիւն կը համարուէր։ Մարոյին պսակում են մի ուրիշի հետ. խեղճը տառապանքից հիւծւում մեռնում է, նախօրօք հրապարակով յայտնելով ամենքին իր սրտի գաղտնիքը։

Նրա դժբախտ սիրական Գաբրօն վշտից խելագարւում է, իսկ ծերունի Նինիկան, անկարող լինելով առանց իր երիտասարդ որդեգրի տան անտէրութիւնը վարելու, թուլանում, աղքատանում է։ Ամբողջ ընտանիքը դժբախտանում է...

«Կոնա» վէպիկում սիրահար զոյգը կազմում են գիւղում ապրող իշխան Թաւբրուաձէի որդի Լեւանը և նրանց աղախին Կոնան։ Թաւբրուաձէ ամուսինները, նկատելով դրանց փոխադարձ համակրութիւնը, սաստիկ վատ են վարւում նրանց հետ. շարունակ ծեծում են մանկահասակ Կոնային և քարասիրտ կերպով վերաբերւում Լեւանին։ Սիրահարների միասին փախչելը չէ յաջողւում, աղջիկը բռնւում է ճանապարհին, իսկ տղան մի կերպով իրան գցում է քաղաք։ Իշխանուհին իր դաժան վարմունքը յանդուգն աղախնի հետ քառապատկում է, իր ծեծ ու տանջանքով նրան բոլորովին ուժասպառ անում։

Եւ 15-ամեայ Կոնան, իր վերջին ուժերը հաւաքած, խրում է դրչահատը իր սէրը քանդող, իր սիրածին իրանից խլող տիկնոջ կուրծքը և ինքն էլ ուժասպառ գետին տապալւում...

Ահա այսպէս են Էկատերինէ Գաբաշուիլու պատմուածքները։ Երիտասարդների սէրը գլուխ չէ գալիս, սիրող զոյգերը ամեն տեղ խոչընդոտների են հանդիպում և դժբախտանում՝ գիւղական հասարակութեան սխալ ու անհիմն աշխարհահայեացքի պատճառով։ Հեղինակը մեծ հմտութեամբ է ներկայացնում իր հերոսների, այդ բոլոր խորտակուած կեանքերի հոգեկան տանջանքները և բուռն բողոք բարձրացնում գիւղական կեանքում տիրող անհեթեթ հասկացողութիւնների դէմ։ Եւ ընթերցողները կատարելապէս համակւում են հեղինակի դէպի տանջուածները տածած քնքոյշ ու ջերմ սիրով և անչափ կարեկցում նրանց բոլորին։

Գաբաշուիլին ունի նաև «Ամուսիններ» վերնագրով մի պատմուածք, որ բացառապէս հայկական կեանքից է առնուած։ Երկու ծերացած ամուսիններ՝ Լալուա-ն ու Ղազուա-ն՝ ապրում են մի փոքր վրացական քաղաքում։ Դրանք 48 տարուայ ամուսիններ են և ապրում են շատ համեստ, խնայողութեամբ և խելացի։ Ղազուան առաջ բազազ է եղել, իսկ հիմա ապրում է իր փողի շահով։ Հեղինակը տալիս է այդտեղ մեզ մի շարք հայկական մանր սովորութիւնների ու յատկութիւնների նկարագիրներ, և ընդհանրապէս այդ 9 երեսից բաղկացած գրուածքը հետաքրքրական է որպէս Վրաստանում ապրող հայ հինաւուրց գաղթականների կեանքի և առանձնայատկութիւնների մի նկարագիր։

Ուշադրութեան արժանի մի գիծ էլ։

Պատմելով վերոյիշեալ «Օրէնա և Բուչէ» վէպիկում Վարդխուրանի գիւղի բնակիչների անչափ բարեկեցութիւնը, նրանց տների ամեն տեսակ բարութիւնով լի լինելը, մեր հեղինակուհին աւելացնում է. «Հայ մարդու ոտը դեռ եւս չի կոխել Վարդխուրանի ճանապարհը»...

Տիկին Էկատերինէ Գաբաշուիլին վրաց առաջնակարգ վիպասանների շարքից է։

Տիգր. Փիրումեան

## Գ ի տ ա կ ա ն

(Նամակ խմբագրութեան)

ՄՈՍԿՈՒԱ.—Այսօր Մոսկուայի Հնագիտական Ընկերութեան նախագահ՝ կոմսուհի Ուվարովան տուեց ինձ վերծանելու երկու հայերէն արձանագրութիւն՝ ստացուած Կամենէց-Պոդոլսկ քաղաքից, ուր, ինչպէս յայտնի է, XVI և XVII-դ դարերում ապրում էին 1200 հայ ընտանիք։ Նրանցից մնացած 32 ահագին ձեռագիր ֆոլիանտներ ներկայումս պահւում են Կիևի համալսարանի դիւանատանը և բովանդակում են իրանց հայերի դատաստանական գործերը։ Հանգ. Կ. Եզեանց, պրոֆ. Ս. Եղիազարեանց և սոյն տողերի գրողը բաւականին քաղուածքներ են արել այդ գրքերից։ Ուրեմն, բնական է, որ յիշեալ քաղաքում դեռ շատ արձա-

նագրութիւններ կարող են գտնուել, թէև 1895 թ. մեր ճանապարհորդութեան միջոցին, մեզ էլ յաջողեցաւ բաւական քանակութեամբ արձանագրութիւններ հաւաքել և լոյս ընծայել Հնագիտական Ընկերութեան հրատարակութեանց մէջ։

Երկու նոր արձանագրութիւնները հետևեալն են.

1. Տապանս յիշատակ է Մարգարի որդի Մարտիրոսին ի դուռն Սբ. Աստուածածնիս թվ. ՌՄԴ (1755 թ.) (Село Калитинцы Подольской губ.).

2. Տապանս է Աստուածատրին որդի Խոճա Ծատուրին (անթուական) բուն քաղաքում այսինքն Կամենեցում.

Յուն. 23-ին 1916 թ.

Մ. Շովրեան

—

Մոսկուայում՝ Հնագիտական Ընկերութեան հրատարակութեամբ շուտով լոյս կը տեսնի մի մեծ գիրք in $4^0$ «Матеріалы по Археологіи Кавказа» томъ XIII, подъ радакціей Графини П. С. Уваровой и Х. И. Кучукъ Іоаннесова, Москва, 1916 г.

Այս մեծ հատորը ամբողջովին նուիրուած է հայոց հնութիւններին, որոնք մնացել են Գանձակի, Երևանի նահանգներում, զարդարուած է բազմաթիւ հնամեայ վանքերի, եկեղեցիների, աւերակ շէնքերի պատկերներով և պատմական նկարագրութեամբ։ Գրքում կան նաև հայերէն մի քանի հարիւր արձանագրութիւններ ռուսերէն թարգմանութեամբ հանդերձ։

## Ի՞ՆՉ Է ՆՍՏԵԼ ՊԱՏԵՐԱԶՄԸ

Լոնդոնում հրատարակուող «Econ mist» թերթը փորձում է հաշուել, թէ ինչ է նստել պատերազմը եւրոպական պետութիւններին, որից քաղելով «Вѣст. Финансовъ»-ը ծանօթացնում է իր ընթերցողներին։ Բոլոր հաշիւները հիմնուած են ենթադրութեան վրայ, թէ պատերազմը կը վերջանայ սոյն տարուայ մարտի 31-ին։ Բայց որովհետև այդ չի նախատեսնւում, ուստի խակական ծախքը էլ աւելի մեծ կը լինի։ «Economist»-ի հաշուով՝ խակական պատերազմական ծախքերը, չհաշուելով աշխատող ույժերի կորուստից առաջացած վնասները, կռուող երկրներին նստում է 101 միլիարդ ռուբլի։ Հէնց միայն տոկոսներ տարեկան պէտք է վճարեն $4^1/_2$ միլիարդ ռ.։ Այս իրական թուերը առաջին անգամ են երևում ծախքերի հաշիւներում և անվերջ գերազանցում են սովորական խաղաղ ժամանակի հաշիւներից։ Բայց այս ծախքերը ինչպէս են ծանրացած զանազան պետութիւնների վրայ։ Դրա համար «Economist»-ը առաջ է բերում թուեր ազգային հարստութեան, ազգային տարեկան եկամտի և ազգային տարեկան խնայողութեան և այդ թուերի հետ համեմատում է պատերազմական ծախքերը։ Այդ թուերը ամենից առաջ ցոյց են տալիս, թէ ո՛րչափ մենք աղքատ ենք։ Մեր ազգային հարստութիւնը հաշւում է 700 ռուբ. մի բնակչին, Թիւրքիային և Բուլղարիային հաւասար, մինչդեռ ազգային հարստութիւնը Անգլիայի հաշւում է մի բնակչին 3900 ռ., Ֆրանսիայինը—3250, Գերմանիայինը —2350, նոյն իսկ Աւստրիայինը—1800 և Իտալիայինը—2000։

Այդպէս է յարաբերում և ազգային տարեկան եկամուտը։ Մեզանում մի բնակչին գալիս է 88 ռ., Անգլիայում—490, Ֆրանսիայում—375, Գերմանիայում 309. վերջապէս նոյն պատկերն է և ազգային տարեկան խնայողութիւնների վերաբերութեամբ. մեզանում—14 ռ., Անգլիայում—82 ռ., Ֆրանսիայում—62 ռ., Գերմանիայում—51 ռ. Աւստրիայում—41 ռ. մի բնակչին։

Այսպէս են բացարձակ թուերը, որոնք պարզ պատկերացնում են մեր համեմատական աղքատութիւնը։ Իսկ երբ համեմատում ենք պատերազմական ծախքերը եկամտի և խնայողութեան հարստութեան թուերի հետ, հետևեալ պատկերն է ստացւում։ Այն ժամանակ, երբ Ռուսաստանում և Ֆրանսիայում պատերազմական ծախքը կազմում է $14^0/_0$ ազգային հարստութեան, Ֆրանսիայում —14,7, Ռուսաստանում—14,1, Անգլիայում—միայն 8,8, իսկ Գերմանիայում - 15,9, Աւստրիայում նոյնպէս 15,9։ Բայց աւելի շօշափելի է երբ համեմատում ենք ազգային եկամուտի հետ. Անգլիայում պատերազմի վրայ արուած ծախքը հաւասար է ազգային եկամուտի $71^0/_0$-ին, մինչդեռ Ֆրանսիայում—$126^0/_0$-ին, Ռուսաստանում—113-ին, Գերմանիայում—121-ին և Աւստրիայում—120-ին։ Այդպիսով այդ պետութիւններից ամեն մինը իր տարեկան եկամուտի մեծ մասը ծախսել է պատերազմի վրայ։

Բայց աւելի պարզորոշ է, երբ համեմատում ենք պատերազմական ծախքերը տարեկան խնայողութեան հետ։ Անգլիայում այդ յարաբերութիւնը—$424^0/_0$ է, Ֆրանսիայում—$766^0/_0$, Ռուսաստանում—$678^0/_0$, Գերմանիայում—$722^0/_0$ և Աւստրիայում—$717^0/_0$։ Այդպիսով եւրոպական պետութիւնները արդէն ծախսել են իրենց ապագայ 7ամեայ խնայողութիւնից աւելին, բացի Անգլիայից, որը ծախսել է միայն իւր $4^1/_2$ տարուայ խնայողութիւնը։ Ուրեմն պատերազմից յետոյ կեանքի համանման պայմաններում ամբողջ տասը տարի է պէտք, որպէս զի ժողովրդի հարստութեան աճումը հասնի նոյն աստիճանին, որ եղել է պատերազմից առաջ։ Բայց որովհետև պատերազմը առաջ է բերում և տնտեսութեան նուազում, ուստի և Եւրոպան 10 տարուայ ընթացքում անգամ հազիւ կարողանայ ետ բերել ազգային բոլոր հարստութիւնը, որ պատերազմից առաջ ունեցել է։

Այս թուերը անողոք կերպով ցոյց են տալիս, որ Եւրոպային ծանր է նստում այս պատերազմը, իսկ մեզ սոյն թուերը նոր լոյս են սփռում։

Մենք այնքան ետ ենք մնացել միւսներից, որ ակներև է, մենք դեռ չենք սպառել այն հնարաւոր միջոցները, որոնցով մոտենայինք թէկուզ Աւստրո-Հունգարիային։ Բայց որովհետև այդ հնարաւորութեան գործադրութիւնը կախուած է ոչ թէ բնական հարստութիւնների պակասութիւնից, այլ այդ գործադրութեան համար հարկաւոր եռանդի պակասութիւնից, ուստի մեզ համար դեռ հնար կայ պատերազմից յետոյ շատ բան ետ բերել։ Բայց հարկաւոր է, որ այդ կատարուի ընդհանուր ծրագրով։

## Քրոնիկոն

Փոխարքայի դիւանատանը հեռագրով տեղեկացնում են Պետրոգրադից, որ փախստականներին յունուար, փետրուար և մարտ ամիսներին օգնելու յատկացուել է 5,380,000 ռ.։ Բացի այդ խորհրդակցութիւնը Պետական Դումայի անդամներ Ջափարովի և Պապաջանեանի միջնորդութեամբ տուել է Թուրքայ բարեգործական ընկերութեանը 300,000 ռ., 71,022 հագուստի և ուտեստի համար, իսկ Հայոց կենտր. Կոմիտէին 135,000 ռ. առաջին 3 ամսուայ ընթացքում Կովկասում եղած 20 որբանոցների պահպանութեան համար։

***

Ա. Ահարոնեանը եկել է Թիֆլիս և, ինչպէս լսւում է, հիւանդ է։

***

Թիֆլիսի Հայ Ուսուցչական կոմիտէն, որ Կովկասի Հայ Ուսուցչական Միութեան նախաձեռնութեամբ կազմակերպուած գործում է պատերազմի առաջին տարուց յանուն փախստական երեխաների ուսումնական-դպրոցական կարիքները հոգալու՝ այժմ Թիֆլիսում Յովնանեան և Ներսիսեան դպրոցի հին շէնքում ունի ութ բաժանմունք։ Իւրաքանչիւր բաժանմունքում սովորում են միջին թուով 55 փախստական աշակերտ-աշակերտուհի։ Ութ բաժանմունքում աշակերտում են 440 հոգի։ Այդ աշակերտութեան կէսը ճաշ է ստանում ամեն օր Թիֆլիսի Կանանց կոմիտէի բացած ճաշարանում, որ գտնւում է Գայիանեան դպրոցում։

***

*Ապրիլին, Թիֆլիսում բացւում է Պետրոգրադի միջազգային վաճառականական բանկի բաժանմունք. բանկի կառավարչի պաշտօնի համար հրաւիրւում է Ալէքսանդրապոլի նախորդ քաղաքագլուխ Կ. Մ. Պետրոսեան։*

* * *

*Թիֆլիսի առաջնորդ Մեսրոպ եպիսկոպոսը Ամենայն Հայոց Կաթողիկոսից կարգադրութիւն է ստացել, որ վարակիչ հիւանդութիւններից մահացածներին եկեղեցիներ չը տանեն, ժողովրդին չը վարակելու պատճառով, այլ ուղղակի գերեզմանատուն։ Նոյն այս կարգադրութիւնը արուած է և միւս թեմերի առաջնորդներին։ Առաջնորդ Մեսրոպ եպիսկոպոսը հրահանգներ ուղարկեց իր թեմի բոլոր եկեղեցիներին, վէհափառ Հայրապետի այս կարգադրութեան առթիւ։*

* * *

*Գ. Ադելխանովի, Միլովի և միւսների գործի առթիւ դատաստանական պալատը յարգեց դատախազի բողոքը և որոշեց վերոյիշեալներին գրաւականով չարձակել բանտից։*

* * *

*«Р. Сл.»-ին հաղորդում են Պետրոգրադից, որ փախստականների խնդրով զբաղուող խորհրդակցութեան մէջ կարդացուեց Կովկասի Փոխարքայի գրութիւնը, թէ պէտք է արդեօք օգնել եզիդիներին։ Հարցը լուծուեց դրական մտքով այն բացատրութիւնից յետոյ, թէ եզիդիները թէև թիւրքահպատակներ են, բայց ռուսների կողմն են։*

* * *

*Սև Քարից (Ղազախ) մեզ հաղորդում են, որ նորընտիր տանուտէր Վարդան Բրուտեանցը եռանդուն գործունէութիւն է ցոյց տալիս, նորոգել տալով փչացած ճանապարհները և խանգարուած աղբիւրները.*

# Համաշխարհային պատերազմը

## ՏԱՃԿԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

*ա.* Կովկասեան ճակատի *ընդհանուր վիճակը վերջին շաբթուայ ընթացքում կարող է բնորոշուել մի բառով—հետապնդում։ Մուխտար-Քեամիլ փաշայի ջարդուած բանակի մասերը անընդհատ նահանջում, իսկ տեղ-տեղ ուղղակի փախուստի են դիմում ռուսաց զօրամասերի առաջ, որոնք անյողդողդ հաստատակամութեամբ հետապնդում են թշնամուն՝ զգալի կորուստներ պատճառելով։*

*Ծովամերձ շրջանում ռուսները դուրս մղելով թիւրքերին Արխաւէի ամրութիւններից՝ շպրտել էին նրանց Վիցէ գետի ձախ ափը։ Այս շաբաթ էլ այդ տեղից նրանց քշել են մինչև Բէուկ-դէրէ գետի ձախ ափը։ Այսպիսով այս գծի վրայ թուրքերը յետ են նահանջել մօտ 30 վերստ։ Ռուսների առաջ մօտ 3 օրուայ ճանապարհ է մնում Ռիզա նաւահանգստին հասնելու համար. եթէ այս նաւահանգիստն էլ գրաւուի՝ ծովամերձ շրջանի տաճիկ զօրքը, որ 15–20 հազարի է հասնում, ծովի կողմից այլ ևս պաշար ստանալ չկարողանալով՝ աւելի ծանր վիճակի մէջ կընկնի։*

*Հարաւային՝ Խնուս-Կոփ-Արճէշ գծի վրայ ևս ռուսները արագընթաց յարձակման դիմելով՝ իրենց չեղ գիծն ուղղել են գրաւելով Մուշը և Խլաթը։ Ի նկատի ունենալով այն հանգամանքը, որ Էրզրումի զօրքի ուտեստի գլխաւոր պահեստները գտնւում էին Մուշում—պէտք է ենթադրել, որ այստեղ մեծ քանակութեամբ կենսամթերք են գրաւել ռուսները։ Այս գծի կռիւների ժամանակ կենդանի մասնակցութիւն են ունեցել մեր հայ..գնդերը, որոնք ըստ մեր մասնաւոր տեղեկութիւնների՝ Մուշ և Խլաթ մտնող զօրքերի առաջին շարքերում են եղել։ Դժբախտաբար մենք չըգիտենք, թէ այդ գնդերը կարողացե՞լ են քուրդ-տաճկական գերութիւնից գոնէ մի քանի հազար հայ ազատել։*

*Ռազմաճակատի կենտրոնում—Էրզրումի շրջանում թշնամու հետապնդումը շարունակւում է։ Ամեն օր տեղեկութիւններ են հասնում, որ նոր զօրամասեր են գերւում և նոր թնդանօթներ ու ռազմամթերք գրաււում։ Ըստ վերջին տեղեկութիւնների թշնամու ընդհանուր կորուստն է մօտ 40 հազար գերի և սպանուած, 5-600 թնդանօթ, բազմաթիւ ձիեր, ինքնաշարժ և ձիաշարժ կառքեր, մօտ 30 հազար հրացան և խիստ մեծ քանակութեամբ ռազմամթերք։*

*Մահմուտ Քեամիլ փաշայի բանակին հասած աղէտը, ինչպէս երևում է, միանգամայն խառնել է թիւրք գերմանական ռազմական ծրագրերը։ Եգիպտական արշաւախմբի համար որոշուած զօրամասերից շատերը ուղարկւում են Հայաստան, իսկ ըստ մասնաւոր հեռագրական տեղեկութիւնների, նաև Թրակիայի սահմանապահ և Բալքանեան գործողութիւնների համար որոշուած զօրքերը։ Վերջապէս, ըստ նոյն տեղեկութիւնների, Էնվեր և Ֆոն Սանդերս փաշաների հետ Հայաստան են գալիս և այն գերմանական գնդերը, որոնք պէտք է պաշտպանէին Դարդանէլի ամրութիւնները և միաժամանակ հսկէին, որ Տաճկաստանը որևիցէ անջատ հաշտութեան փորձեր չանէ...*

*Տաճկական ռազմաբեմի միւս ճակատներից—Եգիպտոսից, Պարսկաստանից և Միջագետքից—առանձին տեղեկութիւններ չկան։ Վերջին ճակատի մասին անցեալ շաբաթ ստացւում էին մտահոգ տեղեկութիւններ, որոնց համաձայն գեներալ Տաունսհէնդին օգնութեան եկած գեներալ Էյլմերի բանակը շրջապատուած է թշնամիներով և մեծ վտանգի մէջ է։ Անգլիացիք շարունակ օգնական ոյժեր են ուղարկում՝ այս վտանգուած բանակը փրկելու համար։ Պէտք է յուսալ, որ այս օգնական զօրքերը մի կողմից և Էրզրումի անկմամբ Միջագետքում գործող տաճիկ զօրքերի թիկունքում առեղծուած ծանր կացութիւնը երկրորդ կողմից կազատեն անգլիացիներին վերահաս փորձանքից։*

## ԲԱԼՔԱՆԵԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Սալոնիկի ճակատի *վրայ ցամաքային գործողութիւնները դեռ նախապատրաստական շրջանում են։ Դաշնակիցները շարունակում են զօրքեր կենտրոնացնել՝ վճռական գործողութիւնները յետաձգելով։ Թշնամիներն էլ դեռ չեն կարողանում ակտիւ քայլերի դիմել մի քանի պատճառներով։ Նախ՝ ինչպէս երևում է, բուլղարների մասնակցութեան խնդիրը այս ճակատում դեռ չէ լուծուել, երկրորդ՝ Էրզրումի աղէտը թիւրքերին ստիպում է յետ քաշուել այս ճակատից և երրորդ՝ աւստրօ գերմանները չափազանց մտահոգ են երևում արևելեան և արևմտեան ճակատների վրայ օր ըստ օրէ հասունացող դրութեամբ։ Այս հանգամանքներում հակառակորդների ընդհարումները սահմանափակւում են գլխաւորապէս օդային կռիւներով, որոնք տեղի են ունենում Բալկաններում բաւական խոշոր չափերով։ Այս ամսի սկզբին ֆրանսացոց 13 սաւառնակից մի տորմիղ ռմբակոծում է Սարումիցան, ար-*

ճակերով կայարանի և բուլղարօ-գերմանական բանակատեղի վրայ 165 ռումբ։ Նոյն օրերին, այս ռազմաբեմի ալբանական ճակատում աւստրիական սաւառնակները ռմբակոծութեան են ենթարկում Վալոնան՝ սպանելով մօտ 80 մարդ խաղաղացիներից։

Յունաստանի մի քանի այլ վայրերում, և մասնաւորապէս կղզիների վրայ, դաշնակիցները շարունակում են իրենց ինքնակամ գործողութիւնները։ Կորֆուն սերբ զօրքերի համար գրաւելուց յետոյ, այս օրերս էլ նրանք Քիոս կղզին են գրաւել և գերմանացոց ու աւստրիացոց հիւպատոսներին գերել։ Յունաստանը թէ բարոյապէս և թէ ֆիզիքապէս իրեն անզօր զգալով իր իրաւունքները պաշտպանելու՝ ձեւական բողոքներ է միայն յայտնում դաշնակիցներին։

ԱՒՍՏՐՕ-ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Արևելեան ճակատում առանձնապէս կենդանութիւն է նկատւում թևերի վրայ – Ռիգայից մինչև Դուինսկ հիւսիսում և Ստրիպից մինչև Ռումինական սահմանը հարաւում։ Այս կենդանութիւնն արտայայտւում է թնդանօթամարտով, ականային կռիւներով, հետախոյզ խմբերի յաճախակի ընդհարմամբ և օդանաւերի ու սաւառնակների արշաւանքներով։ Հետևակ զօրքը, «ռազմադաշտերի թագուհին», դեռ խրամատներից դուրս չի գալիս։ Ուշագրաւ է այս շաբթուայ օդային արշաւանքների մէջ Ռուսաց «Второй» օդանաւի յարձակումը Մանաստերժիսկո կայարանի վրայ, ուր ձգել է 10 հատ 2 պուդանոց և 5 հատ 5 պուդանոց ռումբ և մի արկղ երկաթեայ սլաք։ Եթէ ընդունենք, որ այսքան ռազմանիւթ ունեցող օդանաւի վրայ պէտք է առնուազն 5 մարդ եղած լինի, կստանանք որ նա 70—75 պուդի չափ մի ծանրութիւն է վերցրած եղել իր մէջ։ Այս օրինակ անհաւասար գործիքների ռուսական բանակում երևան գալն անշուշտ մի շատ անախորժ անակնկալ պէտք է լինի գերմանացիների համար, որոնք ցեպելիններով թշնամու քաղաքները ռմբակոծելը իրենց մենաշնորհն էին համարում մինչև օրս։

Արևմտեան ճակատի բոլոր գծերի վրայ գերմանական թնդանօթները սկսել են եռանդուն գործել, բայց նրանք առանձին թափով ռմբակոծում են Շամպանիայում ֆրանսացոց և Արտուայում անգլիացոց ամրութիւնները։ Անցեալ շաբաթ նրանց յաջողուեց Տագիւրի շրջանում առնել ֆրանսացիների առաջին շարքի խրամատները, որ ֆրանսացիք այս շաբաթ մասամբ յետ խլեցին։ Իսկ այս վերջին օրերս էլ նրանք Արտուայում (Ժիւանշի անտառի մօտ) 7 գումարտակով գրոհ տալով ֆրանսական դիրքերը՝ խլում են նրանց առաջին և մինչև իսկ երկրորդ շարքի խրամատները մօտ 800 մեթր տարածութեան վրայ։ Դրա հետ միասին նրանք խիստ ռմբակոծում են Վերդենի ամրութիւնը, որոնք, ինչպէս ֆրանսական լրագիրներից է երևում, յատուկ ուշադրութեան են առնուած այս անգամ։

Այս բոլոր դէպքերը ցոյց են տալիս, որ գերմանացիք պատրաստւում են այս ճակատի վրայ եթէ ոչ վճռական, գոնէ խոշոր գործողութիւնների անցնելու։ Կռուի կենդանանալու հետ մի առանձին թափ են առել այս ճակատի վրայ օդանաւերի և սաւառնակների արշաւանքները. այլեւ նրանք առանձին-առանձին չեն գործում, այլ տորմիղներով։ Այս տեսակէտից յատկապէս աչքի է ընկնում փետրուարի 8-ը։ Այդ օրուայ պաշտօնական հաղորդագրութիւնը պատմում է գրեթէ միայն օդային կռիւների մասին, որոնց ժամանակ ֆրանսացիներին յաջողւում է խորտակել մի ցեպելին, մի ալբատրոս և 5—6 սովորական սաւառնակ։

ԻՏԱԼԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Շարունակւում են սովորական դիրքի կռիւները։ Հաստատւում է, որ աւստրիացոց գործօն և պահեստի զօրքերի թիւն է այս ճակատի վրայ 800 հազար։ Իտալիայի ծառայութիւնը դաշնակիցներին առայժմ միմիայն այն է, որ նա այսքան զօրք կենդրոնացած պահում է իր դէմ։ Յատկապէս այս ծառայութիւնը գնահատելի է ռուսների համար։ Նրանց և թշնամու ուժերի յարաբերութիւնը Գալիցիայում այնպիսի է, որ եթէ Աւստրիան Իտալիայի դէմ կռուող իր 40 դիւիզիաները ևս գործադրէր ռուսների դէմ, վերջիններիս դրութիւնը բաւական մտահոգիչ կը լինէր ռումինական սահմանագլխին։

⁂

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ

Հրատարակիչ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

Կ. Հ. Բ. Ը-թեան փախստականների համար հիմնուած

**կազմատանը, տողագծարանի և ծրարնոցի**

արհեստանոցում ընդունւում են ամեն տեսակ կազմարարական պատուէրներ։ Պատրաստւում են նաև զանազան մեծութեան ծրարներ, աշակերտական տետրեր և գիւտնական գրքեր։ Դիմել «Համբաւաբեր»-ի գրասենեակը ցերեկուայ ժամը 12—2 և երեկոյեան 5—7, բացի կիրակի և տօն օրերից։

---

Բացուած է բաժանորդագրութիւն 1916 թ.

XI տարի **ԽԱԹԱԲԱԼԱ** XI տարի

Երգիծաբանական-սատիրական գունաւոր պատկերազարդ շաբաթաթերթի

Տարեկան գինն է ամեն տեղ—5 ռ., կէս տարուան 3 ռ., արտասահման 6 ռ.

Հասցէն՝ Тифлисъ, редакція „Хатабала" կամ Tiflis (Caucase), Rédaction «Khatabala». 3—2

---

Բացուած է բաժանորդագրութիւն

II տարի **ՎԱՆ-ՏՈՍՓ** II տարի

հասարակական, քաղաքական, գրական շաբաթաթերթի

Բաժնեգինը՝ Ռուսաստանում տարեկան 4 ռ., կէս տարուան 2 ռ. 50 կ., արտասահմանում տարեկան 15 ֆր., կէս տարուան 8 ֆր.

Խմբագրութեան հասցէն՝ Тифлисъ, Головинск. пр. 41, редакція арм. журнала «Ван-Тосп» կամ Rédaction du journal Armenien «Van-Tosp». Russie, Tiflis, Golovinski pr. 41.

---

Открыта подписка на 1916 г.

на ежедневную литературную, политнческую и общественную газету

**„БАКУ"**

XV годъ изданія

и на понедѣльничную и послѣпраздничную газету

**„Кавказскій Телеграфъ"**

Въ 1916 г. «Баку» и «Кавказскій Телеграфъ» будуть выходить по прежней программѣ, съ значительнымъ расширеніемъ отдѣловъ военныхъ событій и собственныхъ телеграммъ.

Подписная цѣна съ доставкой и пересылкой

На 12 мѣс. 9 руб. на 6 мѣс. 5 руб.,

Подписка принимается также во всѣхъ почтовыхъ конторахъ.

Годовая подписка считается только съ 1-го января.

Адресъ: Парапетъ, зданіе Армянской церкви,

Телефонъ конторы: 6—91.

Издатель: *Х. Вермишевъ*

---

ԹԻՖԼԻՍԻ ԳՐԱՎԱՃԱՌԱՆՈՑՆԵՐՈՒՄ ԾԱԽՒՈՒՄ ԵՆ

**ԼԷՕԻ**

Հետևեալ ՆՈՐ ԱՇԽԱՏՈՒԹԻՒՆՆԵՐԸ.

1, **ՀԱՅ ՀԱՅՐԵՆԻՔԸ.**

Հայրենագիտական ձեռնարկ Հայաստանի քարտէզով։

**ԳԻՆԸ 60 ԿՈՊ.**

2. **ՀԱՅՈՑ ՀԱՐՑԻ ՎԱՒԵՐԱԳՐԵՐԸ.**

Պատմութիւն և վաւերագրեր։

**ԳԻՆԸ 1 ՌՈՒԲԼԻ**

3. **ՎԱՆԻ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ**

Մի դրուագ Հայաստանի պատմութիւնից. 23 պատկեր, 2 քարտէզ

**ԳԻՆԸ 1 ՌՈՒԲԼԻ 25 ԿՈՊ.**

Պահեստը «Գուտտենբերգ» գրավաճառանոցում։ 3— 3

---

**Հ. Կ. ԿՈՄԻՏԷԻ ՀՐԱՒԷՐՈՎ**

Այսօր, ժամը 6-ին երեկոյեան

Կ. Հ. Բ. Ընկերութեան դահլիճում (Արաս-արադսկայա հրապ., տ. 7)

**ԽՈՐՀՐԴԱԿՑՈՒԹԻՒՆ**

Թիֆլիսի փախստականների միօրեայ անուանացուցագրութեան մասին 14 փետրուարի։

Ցանկացողները կարող են մասնակցել։

---

Թիֆլիսի Հայոց Գիւղատնտեսական և Տնայնագործական Ընկերութեան նախագահ Ա. Սահակեանի խմբագրութեամբ և հրատարակութեամբ

**ԳԻՒՂԱՏՆՏԵՍ**

երկշաբաթաթերթն առաջիկայ 1916 թուականի ընթացքում լոյս կը տեսնի կանոնաւորապէս երկու շաբաթը մի անգամ, իւրաքանչիւր ամսի 15-ին և 30-ին։

«ԳԻՒՂԱՏՆՏԵՍ»-ը կը տայ 1916 թուականի ընթացքում իր տարեկան բաժանորդներին մի քանի գիւղատնտեսական գրքոյկներ և բրոշիւրներ՝ իբրև պրեմիա.

ՏԱՐԵԿԱՆ ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆՆ Է 3 Ր.

Պէտք է դիմել՝ Тифлисъ, Контора Армянскаго Сельскохозяйственнаго Общества, для журнала «Гюхатнтесъ»,

Առաջին №-ը լոյս կը տեսնի յունուարի 15-ին։ 3—3

---

Բացուած է բաժանորդագրութիւն 1916 թուի

**ԱՐԵՒ**

ԳՐԱԿԱՆ, ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԵՒ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՕՐԱԹԵՐԹԻ

Կը հրատարակուի աշխատակիցների նոյն կազմով և նոյն ուղղութեամբ

Բ Ա Ժ Ն Ե Գ Ի Ն Ն Է

| Ռուսաստանի համար | | Պարսկաստան | |
|---|---|---|---|
| Տարեկան . | . 8 ր. | Տարեկան. | . 10 ր. |
| 11ամիս . | . 7 ր. | Կէս տարուան. | . 6 ր. |
| 10 » . | . 6 ր. 50 կ. | | |
| 9 » . | . 6 ր. | Ամերիկա | |
| 8 » . | . 5 ր. 50 կ. | | |
| 7 » . | . 5 ր. | Տարեկան. | . 5 դոլ. |
| 6 » . | . 4 ր. 50 կ. | Կէս տարուան. | . 3 » |
| 5 » . | . 4 ր. | | |
| 4 » . | . 3 ր. | Ֆրանսիա | |
| 3 » . | . 2 ր. 50 կ. | | |
| 2 » . | . 1 ր. 75 կ. | Տարեկան. | . 25 ֆր. |
| Ամսական . | . 1 ր. | Կէս տարուան. | . 15 ֆր. |

ԱՊԱՌԻԿ ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ ՉԻ ԸՆԴՈՒՆՒՈՒՄ

Կարելի է վճարել մաս-մաս՝ բաժնեգրուելիս—3 ր., ապրիլի 1-ին—3 ր. և սեպտեմբերի 1-ին 2 ր.

Հասցէն փոխելու համար պէտք է ուղարկել 40 կոպ. (մարկաներով և հին հասցէն։ 3—1

Հասցէն՝ Баку. Больш. Морская, № 30, Ред. газ. „АРЕВЪ". Արտասահմանից՝ Bakou Rédaction «AREV»։ Հեռախօս № 37-04.

---

Բացուած է 1916 թուի բաժանորդագրութիւնը

**„ՀՈՐԻԶՈՆ"**

Հասարակական, գրական և քաղաքական օրաթերթի

Ութերորդ տարի

Բաժնեգին՝ Ռուսաստանի համար տարեկան՝ 10 ր., կէս տարուայ՝ 6 ր. Արտասահմանի համար՝ տարեկան 12 ր. կէս տարուայ 7 ր.։

Հասցէ՝ Тифлисъ. Редакція газеты „ОРИЗОНЪ" Сололакская ул. № 6 кв. 1 телеф. № 15—57. Արտասահմանից Tiflis (Russie, Caucase). Rédaction «Horizon». 3—2

ՅԱՒԵԼՈՒԱԾ № 8

# „ՀԱՄԲԱՒԱԲԵՐ"-Ի

## ԱՆՈՒԱՆԱՑՈՒՑԱԿ ԱՊԱՍՏԱՐԱՆՆԵՐԻ ՓԱԽՍՏԱԿԱՆ ՈՐԲ ԵՐԵԽԱՆԵՐԻ

### ՄԵԾ-ՂԱՐԱՔԻԼԻՍԱՅԻ ՈՐԲԵՐԻ ՑՈՒՑԱԿԸ

(Շարունակութիւն)

| № № | ԱԶԳԱՆՈՒՆ ԵՒ ԱՆՈՒՆ | Ծննդա-վայր | Տարիքը | Ծնող հայր կամ մայր | Ծնողների տեղը | Գրագէտ է | ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ |
|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | Աւետիսեան Սարգիս | Վան | 4 | ունի | — | — | |
| 2 | Աւետիսեան Լուսիկ | Ծերան | 4 | չունի | — | — | |
| 3 | Արշակեան Բայեազ | Պերանլի | 5 | չունի | — | — | բրդունի |
| 4 | Աղիզեան Աղաւնի | Մոկ | 6 | չունի | — | — | |
| 5 | Այվազեան Վարդան | Վան | 6 | չունի | — | — | |
| 6 | Աւագեան Երուանդ | Կուղուպաշ | 6 | չունի | — | — | |
| 7 | Աբրահամեան Նուարդ | Սեան | 6 | չունի | — | — | |
| 8 | Աբրահամեան Դանիէլ | Արճէշ | 8 | չունի | — | — | |
| 9 | Աւետիսեան Գալուստ | Վան | 10 | չունի | — | — | |
| 10 | Աղիզեան Ռեհան | Մոկ | 8 | չունի | — | — | |
| 11 | Աւետիսեան Մուրադ | Շատախ | 9 | չունի | — | — | |
| 12 | Աւագեան Տրդատ | Վան | 8 | — | — | այո | |
| 13 | Աւագեան Հրանտ | » | 10 | — | — | այո | |
| 14 | Աւետիսեան Ասքանազ | — | — | — | — | — | |
| 15 | Աւտոյեան Կարապետ | — | 5 | — | — | — | |
| 16 | Աւետիսեան Խաչիկ | Գեօղալդարա | 10 | չունի | — | — | |
| 17 | Աբրահամեան Վարսենիկ | Կաղպակ | 10 | չունի | — | — | |
| 18 | Աւետիսեան Ենովք | Գեօղալդարա | 3 | չունի | — | — | |
| 19 | Աւետիսեան Սիմէօն | Ալդան | 6 | չունի | — | — | |
| 20 | Բաղդասարեան Վանիկ | Ալջաւազ | 4 | չունի | — | — | |
| 21 | Բաղդասարեան Հրանուշ | Մաշտակ | 3 | չունի | — | — | |
| 22 | Բուլանեան Շուշանիկ | Վան | 7 | մայր | Երևան | — | |
| 23 | Բուլանեան Գոհարիկ | » | 4 | մայր | Երևան | — | |
| 24 | Բուլանեան Համեստ | » | 10 | մայր | Երևան | — | |
| 25 | Բաղդասարեան Սաթենիկ | Ղարաքիլիսա | 8 | չունի | — | — | |
| 26 | Բաղալեան Կարապետ | — | 4 | — | — | — | |
| 27 | Գէորգեան Նշան | չը գիտէ | 4 | չունի | — | — | |
| 28 | Գէորգեան Աղա | Վան | 4 | չունի | — | — | |
| 29 | Գաղոյեան Մաքօ | » | 6 | չունի | — | — | |
| 30 | Գաբրիէլեան Արամ | — | 5 | չունի | — | — | |
| 31 | Գալոյեան Ֆարխօ | Բերկրի | 6 | չունի | — | — | |
| 32 | Գրիգորեան Արշակ | Հակն | 8 | քր. եղ. | Երևան | — | |
| 33 | Գրիգորեան Կատարինէ | — | — | չունի | — | — | |
| 34 | Գէորգեան Ալմաստ | Վան | 12 | չունի | — | — | |
| 35 | Գէորգեան Զմօ | Ալջաւազ | 10 | չունի | — | — | |
| 36 | Գրիգորեան Սիրուն | Արտամ | 10 | չունի | — | — | |
| 37 | Դաւթեան Կարապետ | — | 5 | — | — | — | |
| 38 | Եղիազարեան Յովհաննէս | Աղկաւ | 15 | չունի | — | — | |
| 39 | Եղիազարեան Մարթա | Շատախ | 7 | չունի | — | — | |
| 40 | Եղիազարեան Հայկ | » | 11 | չունի | — | այո | |
| 41 | Եղիազարեան Սիրանուշ | Աղկաւ | 13 | չունի | — | — | |
| 42 | Եղոյեան Մրօ | Ալջաւազ | 8 | չունի | — | — | |
| 43 | Եղոյեան Աստղիկ | » | 8 | չունի | — | — | |
| 44 | Եղիազարեան Մարգար | Աղկաւ | 10 | չունի | — | — | |

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 45 | Եղոյեան Սիրան | Կզլջա | 6 | հայր | Վաղարշպ. | — |
| 46 | Եղիազարեան Գրիգոր | Աղկաւ | 6 | չունի | — | — |
| 47 | Զաքարեան Ենովք | Աթան | 9 | չունի | — | — |
| 48 | Զամանեան Կայսերուհի | Վան | 12 | չունի | — | այո |
| 49 | Զամանեան Թաջբերունի | Վան | 10 | չունի | — | այո |
| 50 | Թելոյեան Սերոբ | Նատախ | 6 | չունի | — | — |
| 51 | Ժերոյեան Մարօ | — | 4 | — | — | — |
| 52 | Խաչատրեան Սիրվարդ | Վան | 10 | մայր | Երեւան | այո |
| 53 | Խաչատրեան Ասքանազ | Վան | 8 | մայր | Երեւան | այո |
| 54 | Խաչոյեան Ազատ | Վան | 4 | չունր | — | — |
| 55 | Խաչիկեան Սիրուն | Վան | 4 | չունի | — | — |
| 56 | Կարապետեան Ազնիւ | — | 8 | — | — | — |
| 57 | Կարապետեան Վահան | Մոկ | 8 | մայր | Երեւան | — |
| 58 | Կարոյեան Նոյեմզար | Խարակաս | 8 | չունի | — | — |
| 59 | Համբարձումեան Ազնիւ | Կուռուպաշ | 12 | չունի | — | — |
| 60 | Հարոյեան Աղաւնի | Ասպաղ | 5 | մայր | չը գիտէ | — |
| 61 | Ղազարեան Արշակ | Գեոմ | 5 | չունի | — | — |
| 62 | Ղազարեան Վարդգէս | Մուլք | 4 | չունի | — | — |
| 63 | Մանուկեան Նուարդ | Վան | 5 | մայր | — | — |
| 64 | Մանուկեան Հրանուշ | Վան | 5 | մայր | — | — |
| 65 | Մխոյեան Սերոբ | Խիզզա | 10 | մայր | Վան | — |
| 66 | Մարտիրոսեան Կարին | Կարճկան | 8 | չունի | — | — |
| 67 | Մովսիսեան Կատարինէ | Էմերվեն | 5 | չունի | — | — |
| 68 | Մովսիսեան Զինար | — | — | — | — | — |
| 69 | Մարգարեան Վարդօ | — | — | — | — | — |
| 70 | Մկրտչեան Ոսկան | — | — | — | — | — |
| 71 | Մելիքեան Ոսկան | — | — | — | — | — |
| 72 | Միքայէլեան Նուարդ | Վան | 8 | չունի | — | — |
| 73 | Մարտիրոսեան Ադրինէ | Վան | 12 | չունի | — | այո |
| 74 | Մարգարեան Վարսենիկ | Վան | 12 | չունի | — | այո |
| 75 | Միքայէլեան Գաբրիէլ | Վան | 12 | չունի | — | այո |
| 76 | Մնացականեան Վահրամ | Վան | 10 | չունի | — | այո |
| 77 | Միքայէլեան Ռաֆայէլ | Վան | 9 | չունի | — | — |
| 78 | Մուրադեան Սուսան | Վան | 9 | չունի | — | — |
| 79 | Մկրտչեան Դիլբար | Մաճր | 10 | չունի | — | — |
| 80 | Մկրտչեան Նազօ | Ճանկ | 10 | չունի | — | — |
| 81 | Մուրադեան Վարդանուշ | Մուլք | 8 | չունի | — | — |
| 82 | Մխաքեան Զիչօ | Փրխուս | 9 | չունի | — | — |
| 83 | Միքայէլեան Գուրգէն | Վան | 8 | չունի | — | — |
| 84 | Մկրտչեան Սուրէն | Վան | 8 | չունի | — | — |
| 85 | Մանուկեան Ռեհան | Վան | 8 | չունի | — | — |
| 86 | Մինասեան Սալոմ | Զիէլ | 8 | չունի | — | — |
| 87 | Մարտիրոսեան Գոհարիկ | Վան | 6 | չունի | — | — |
| 88 | Մարկոսեան Սերոբ | Վան | 7 | չունի | — | — |
| 89 | Միրաքեան Ազվարդ | Վան | 7 | չունի | — | — |
| 90 | Մուչոյեան Սրբուհի | Արտաւազ | 7 | չունի | — | — |
| 91 | Մարգարեան Ազօ | Ղարաք | 5 | չունի | — | — |
| 92 | Մարկոսեան Հայրիկ | Ֆարուխ | 5 | չունի | — | — |
| 93 | Մարկոսեան Գաբրիէլ | Վան | 6 | չունի | — | — |
| 94 | Միքայէլեան Կարմիր | Վան | 5 | չունի | — | — |
| 95 | Մեսրոբեան Հայկ | — | 6 | — | — | — |
| 96 | Միսաքեան Արամ | Բաղդդան | 5 | չունի | — | — |
| 97 | Մարտիրոսեան Ամալիա | Վան | 5 | չունի | — | — |
| 98 | Մուքոյեան Յասմիկ | Արտաւազ | 4 | չունի | — | — |
| 99 | Մակարեան Մաքրուհի | Վան | 4 | չունի | — | — |
| 100 | Յովհաննիսեան Թամիլլէ | Վան | 4 | ունի | չը գիտէ | — |

| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| 101 | Յովհաննիսեան Սիրանուշ | — | 6 | — | — | — | |
| 102 | Յովհաննիսեան Միսաք | Նորշնջղ | 9 | — | — | — | |
| 103 | Յովհաննիսեան Հրանուշ | Վան | 6 | եղբայր | Երևան | — | |
| 104 | Յովհաննիսեան Արփս | Շահբաղ | 6 | — | — | — | |
| 105 | Յակոբեան Վարդան | Արճաւ | 4 | չունի | — | — | |
| 106 | Յովհաննիսեան Արամ | Կարճկան | 7 | չունի | — | — | |
| 107 | Յակոբեան Թանգօ | Կործոթ | 8 | չունի | — | — | |
| 108 | Յովհաննիսեան Աշխէն | Ֆարուխ | 10 | չունի | — | — | |
| 109 | Յովհաննիսեան Մարգարիտ | Թերգւար | 10 | չունի | — | — | |
| 110 | Յակոբեան Մաքրուհի | — | 7 | — | — | — | |
| 111 | Յարութիւնեան Արսէն | Մուշ | 10 | չունի | — | — | |
| 112 | Յակոբեան Մայիս | Խառակոնիս | 10 | հայր | չը գիտէ | — | |
| 113 | Յակոբեան Մարիամ | Կործոթ | 13 | չունի | — | — | |
| 114 | Յովհաննիսեան Եղիշէ | Վան | 9 | եղբայր | Երևան | այո | |
| 115 | Յովհաննիսեան Զարուհի | Վան | 10 | — | — | — | |
| 116 | Յակոբեան Վահրիճ | Վան | 11 | — | — | — | |
| 117 | Յակոբեան Նազարէթ | Շատախ | 5 | — | — | — | |
| 118 | Նալբանդեան Հրամել | Վան | 12 | չունի | — | այո | |
| 119 | Նալբանդեան Տրդատ | Վան | 10 | — | — | — | |
| 120 | Նալբանդեան Աղա | Վան | 6 | — | — | — | |
| 121 | Ներսիսեան Երուանդ | Դարմանդեղ | 9 | հայր | Երևան | | |
| 122 | Նալբանդեան Վիկտորիա | Վան | 4 | — | — | — | |
| 123 | Նախշոյեան Մշուր | Մշկերաբերդ | 10 | չունի | — | — | քուրդ |
| 124 | Նարսոյեան Անթառամ | Կարջն | 7 | չունի | — | — | |
| 125 | Նշանեան Աղա | Վան | 6 | հայր | չը գիտէ | — | |
| 126 | Նշանեան Համբարձում | Վան | 6 | չունի | — | — | |
| 127 | Շիրաքեան Լուսիկ | Ծայրտար | 5 | — | — | — | |
| 128 | Շահինեան Սիրուն | Աւան | 7 | — | — | — | |
| 129 | Պետրոսեան Դաւիթ | Կենդան | 10 | չունի | — | — | |
| 130 | Պետրոսեան Անթառամ | Մուլք | 12 | չունի | — | այո | |
| 131 | Պետրոսեան Գասպար | Յարութ | 12 | քոյր | Երևան | այո | |
| 132 | Պետրոսեան Հայկանուշ | Մուլք | 9 | չունի | — | այո | |
| 133 | Պետրոսեան Աղնիւ | Խժիշկ | 12 | չունի | — | — | |
| 134 | Պօղոսեան Երուանդուհի | Վան | 10 | հայր | Երևան | այո | |
| 135 | Պետրոսեան Աղնիւ | Կենդան | 10 | — | — | — | |
| 136 | Պօղոսեան Պետրոս | Վան | 10 | հայր | Երևան | — | |
| 137 | Պետրոսեան Կարապետ | Կանկվար | 10 | չունի | — | — | |
| 138 | Պօղոսեան Միհրան | Կոփ | 9 | չունի | — | — | |
| 139 | Պետրոսեան Ջուջան | Պատրոն | 8 | մայր | Վաղարշպ. | — | |
| 140 | Պետրոսեան Արմենակ | — | 6 | — | — | — | |
| 141 | Պետրոսեան Ղազար | Պեյուան | 8 | չունի | — | — | |
| 142 | Պետրոսեան Արմենակ | Ազովեր | 4 | չունի | — | — | |
| 143 | Պետրոսեան Արաքս | Վան | 4 | — | — | — | |
| 144 | Պօղոսեան Արուսեակ | Վան | 3 | հայր | — | — | |
| 145 | Պետրոսեան Դաւիթ | Կենդան | 10 | չունի | — | — | |
| 146 | Տոստեան Արմենակ | Մոկ | 8 | չունի | — | — | |
| 147 | Տիգրանեան Գուրգէն | Շամիրամ | 4 | չունի | — | — | |
| 148 | Տիգրանեան Ալմաստ | — | 4 | — | — | — | |
| 149 | Սարգսեան Լուսիկ | Խիզան | 5 | ունի | չը գիտէ | — | |
| 150 | Սարգսեան Ալմաստ | — | 7 | — | — | — | |
| 151 | Սեդրակեան Իսկուհի | Կենդան | 10 | — | — | — | |
| 152 | Սերոբեան Եղիս | Վան | 9 | — | — | — | |
| 153 | Ստեփանեան Սարգիս | Ամխաբերդ | 12 | — | — | — | |
| 154 | Սարգսեան Արփենիկ | Խնուս | 11 | եղբայր | Թիֆլիս | — | |
| 155 | Սրգէեան Նուբար | Մաճրախ | 10 | չունի | — | — | |
| 156 | Ստեփանեան Նուարդ | Բերդ | 9 | չունի | — | — | |
| 157 | Սեդրակեան Վազգէն | Կենդան | 6 | չունի | — | — | |
| 158 | Սահակեան Նանօ | Կողբ | 8 | չունի | — | — | |
| 159 | Սիմէօնեան Քրիստ | Ֆարուխ | 6 | չունի | — | — | |
| 160 | Սիմէօնեան Թագուլ | Ծվստան | 4 | չունի | — | — | |

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 161 | Սրգէեան Մելքոն | Մաճրշի | 4 | չունի | — | — |
| 162 | Սամվէլեան Նուարդ | Վան | 4 | ունի | Վաղրշպ. | — |
| 163 | Վահանեան Վարսենիկ | Խարախոն | 4 | չունի | — | — |
| 164 | Վարդանեան Խաթուն | Գուլպալ | 10 | չունի | — | այո |
| 165 | Վարդանեան Շիչօ | Արտաւագ | 5 | մայր | — | — |
| 166 | Վարդանեան Զուարթ | Արտաւագ | 7 | մայր | — | — |
| 167 | Փախոյեան Սօնէ | Կախպեթ | 11 | չունի | — | — |
| 168 | Օվանեան Տիգրան | — | — | — | — | — |
| 169 | Օխոյեան Բարեպտոն | Մարնջուղ | 10 | չունի | — | — |
| 170 | Օխոյեան Մակար | Նորշնջղ | 10 | չունի | — | — |
| 171 | Մարգօ | Վան | 2 | չըգիտէ | — | — |
| 172 | Ոսկան | Վան | 3 | — | — | — |
| 173 | Արտաշէս | Վան | 3 | չունի | — | — |
| 174 | Վարդան | Վան | 3 | ունի | — | — |
| 175 | Խաչատուր | չը գիտէ | 4 | — | — | — |
| 176 | Լալօ | — | 7 | — | — | — |

(Կը շարունակուի)

Տպ. Ն. Աղանեանի